**ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ**

# ԱՆԴՐԱՆԻԿ

(հատված վեպից)

Օրերն անցնում էին եզնասայլի ճռռոցով: Անդրանիկը հրամայել էր զորագունդը շարքի կանգնեցնել վանքի բակում: Բոլորը գիտեին, որ դա վերջին, գուցե նախավերջին օրն է, որ միասին են: Երեկ անուրդով վաճառեցին ձիերը: Պահել են միայն Անդրանիկի ձին:

Անդրանիկը հագավ գեներալական ըզգեստը՝ կրծքին բազմաթիվ խաչ-շքանշանների մետաղափայլը: Սակայն դրանք արդեն կորցրել էին իրենց ներշնչելու ուժը: Բաճկոնի կոճակները դժվարով մե րակեց, ձեռքերը մի տեսակ փափկացել էին: Երևաց Եղիշե Քաջունին:

— Ի՞նչ է,— հարցրեց Անդրանիկը,— զորքն արդեն շարվե՞լ է:

— Դեռ ոչ, պատրաստվում է,— պատասխանեց Քաջունին:— Հրամանդ է՝ կեսօրին շարել: Փարիզի «Թան» թերթի խմբագիրն է եկել, զորավար, ուզում է քեզ տեսնել:

— Իսկ ես չեմ ուզում: Գնա ասա՝ չեմ ուզում:

Ոտքը դրեց աթոռակին, քրջով սկսեց փայլեցնել կոշիկները:

— Բայց սպասիր, Եղիշե, միտքս փոխեցի: Գնա ներս բեր: Տեսնենք այդ «թանից» ինչ թթու կստանանք: Բե՛ր:

Ֆրանսիացին, որ թեթև էր հագնված, գրեթե պատանի էր՝ աղջկա նրբությամբ: Ողջունեց՝ դրվատանքի խոսքերով: Անդրանիկն ընդհատեց նրան.

— Հանեք ձեր ձեռնոցները: Հանեք, ես սարսափում եմ մեռելագույն ձեռքերից:

Խմբագիրը դժվարավ հանեց մինչև արմունկները պրկած սպիտակ ձեռնոցները:

— Գնդապետ Բրեմոնը ողջունում է ձեզ, գեներալ:

— Կիլիկիայի՞ց եք գալիս, երիտասարդ:

— Ազնիվ Ֆրանսիան մտադիր է Կիլիկիայում հայկական հանրապետություն ստեղծել՝ իր հովանու ներքո:

— Նորի՞ց խաբեություն,— դղրդաց Անդրանիկը:— Նորի՞ց աչքակապություն: Ամո՛թ, ամո՛թ... Մեր հայ մարդիկ հազարներով վազեցին պաշտպանելու քու հայրենիք Ֆրանսիան: Կռվեցին թուրք թշնամու դեմ Սիրիայում, Կիլիկիայում: Իզուր: Մեր հայերը հավատացին ձեզ ու խաբվեցին:

— Գնդապետ Բրեմոնը մտադիր է իր բանակի մեջ եղած հայկական լեգեոնը դարձնել ապագա հայկական Կիլիկիայի պետության բանակի կորիզը:

— Չեմ հավատում...

— Ֆրանսիան ասպետ է, պարոն գեներալ,— ասաց խմբագիրը:— Նա իր խոստումը չի դրժի:

— Կդրժի...— Անդրանիկը ձեռքը սրի պես պարզեց դեպի բաց դուռը:— Կըդրժի...

Խմբագիրը հասկացավ, որ ինքը պետք է հեռանա: Դժվարով հագավ ձեռնոցները, դուրս եկավ:

Եղիշե Քաջունին նոր բան ասաց.

— Անգլիացի գեներալ Միլը ևս ցանկանում է քեզ տեսնել, զորավար:

— Ո՞վ է,— Անդրանիկի ձայնը բողոքով հնչեց:— Ո՞վ է:

— Արևելքում անգլիական զորքերի ընդհանուր հրամանատարը:

— Եկել է Էջմիածնի սրբությունները կողոպտելո՞ւ:

— Նե՛րս բերեմ:

Անդրանիկը չպատասխանեց:

Խցի դուռը մտնեց խիստ բարձրահասակ, աչքերն իրարից անբնական հեռու մեկի մարմնով: Գեներալ Միլն է: Ներս մտավ, իրենով գրեթե լցնելով խուցը: Ծըքերթային սրի զնգոց:

— Պատիվ ունեմ...

— Շատ կցանկանայի ձեզ հյուրասիրել, գեներալ, սակայն միայն ջուր ունեմ, միայն ջուր, այն էլ ոչ այնքան սառը:

— Պատիվ ունեմ...

Անդրանիկը բացեց պատուհանի փեղկը: Դրսից խուլ աղմուկ խուժեց ներս: Դրսում գաղթական որբեր, կանայք էին թափառում՝ հյուծված, ոտքի վրա մեռնող: Ոմանք անշարժ պառկել կամ նըստել էին պատերի տակ ու դանդաղ ըսպասում էին ամեն ինչի վերջին:

— Ձեր ասելիքն այս մեռնողներին ասացեք, պարոն Միլ:

Անգլիացին մի երկվայրկյան նայեց մեռնող, նեխվող, հառաչող մարդկանց, ահով հետ քաշվեց պատուհանից:

— Ովքե՞ր են այս դժբախտները:

— Ձեր նախկին դաշնակիցները, գեներալ Միլ: Սրանք կռվում էին ձեզ համար:

— Բայց ես այլ բանի համար եմ ե-



կել,— ասաց Միլը:— Պատիվ ունեմ...

— Հաց բերե՞լ եք սովյալների համար:

— Ոչ: Բայց պատիվ ունեմ...

Անդրանիկը երեսը շրջեց նրանից, նորից զբաղվեց կոշիկները մաքրելով: Եղիշե Քաջունին բաց արեց խցի դուռը, որըն ինքն իրեն էր ծածկվել, երևի քամու օգնությամբ:

— Համեցեք, պարոն գեներալ: Մեր զորավարը հանգստի կարոտ է: Նա շատ է տառապել:

Գեներալ Միլի հետևից բարձր քրքջաց Անդրանիկը: Եվրոպայի դռներից այսպես վռնդում են հային, հայ պատվիրակներին: Պարոն Հասկել, դուռդ բաց, ես հայ եմ:—Դուռը շրխկոցով փակվեց հայ պատվիրակների առաջ: — Փորձեցին ներս մտնել լորդերի պալատ:— Ես քո փոքր դաշնակիցն եմ, Լոնդոն, դուռդ բաց:— Ա՜, խեղճ որբուկս, գնա հարևանի դուռը ծեծիր:— Լլոյդ Ջորջը ձեռքերը տարածեց:— Կցավիմ, որ մեռնում է հայ ժողովուրդը, բայց դարման չունիմ: Կցավիմ: Օ՜, Համայնքների պալատ,— աղերսեց հայ պատվիրակությունը:— Գթա, խղճա մեզ, նորից են մեզ կոտորում:— Օգնել չենք կարող,— պատասխանեց Համայնքների պալատը:— Մեր զորքերը հետ են քաշվում Կովկասից: Մեր նավերը չեն կարող ելնել հայոց լեռները:

— Է, հե՜, հե՜, հե՜...

Խցի պատերը դողացին ցավի, ցասումի այս մռնչոցից: Սրերի պես Անդրանիկի մարմնին էին ցցվում արյունով հյուսված հեռագրերը:— Հռոմ, գթա՜:— Իտալիայի նախարարապետ Նիտտին ձայն չհանեց:— Ամերիկա, Վիլսոնին, բարեսի՞րտ պրեզիդենտ, հասցրու քո զորավոր միջամտությունը:— Վիլսոնը սիգար է ծխում, քունը տանում է:— Է՜, հանգիստ թողեք պրեզիդենտին: Ախր դուք ո՞վ եք, ի՞նչ եք: Հեռո՜ւ:—Բյաքել, Վանիզպար, Բալֆուր... Պարոնա՜յք, ձեզ ենք դիմում հույսով, հիշեցեք մեզ:— Ձայն անձայն և մեռած արձագանք:— Պիշոն, Կլեմանսո, հասեք...— Նորից անարձագանք աղերսանք: Բոլոր դռները փակ, բոլորը սրտերը փակ:

Խցի մեջ խնկի ծուխ է:

— Հեռացրու, Եղիշե: Ես վառոդի ծխի եմ սովոր:

Խնկի ծուխը կտրվեց:

Այլևս ծուխ չկա:

Անդրանիկը վրայից պոկեց գեներալական զգեստը, հագավ ֆիդայականը՝ թեև մաշված, բայց հարազատ: Վառոդի ու կորուսված Սասունի հոտեր զգաց, սթափվեց թմրությունից, կարծես վերգտավ վաղեմի արիությունը:

— Եղիշե, վեհափառն իր տեղո՞ւմ է:

— Այո, զորավար:
— Գնա մոտը: Գնա, գնա, իմ անունից ասա: Գիտե՞ս ինչ ասա: Ասա՝ վեհափառ հայրիկ...վեհափառ, հասկացրեք, ստիպեցեք հանրապետության վարիչներին, որ մեր դռները բաց պահեն Ռուսիո առջև, միայն ռուսի առջև: Հասկացա՞ր: Այդպես: Ասա՝ այլապես հայ ժողովուրդը կորստյան կմատնվի լիովին, և նրա անեծքը կծանրանա այս տաճարի ու գահի վրա, բոլորիդ վրա: Գնա: Հենց այդպես էլ ասա:
Անդրանիկին այցի եկավ մի ուրիշ անգլիացի՝ գեներալ Դեյվին: Անդրանիկը մեղմ ընդունեց նրան:
— Հաց բերե՞լ եք, պարոն գեներալ,— նրան հարցանքով նստեցրեց խցում եղած միակ աթոռին:— Ինձ համար չեմ ասում, գաղթական ժողովրդի համար, տեսնում եմ, հաց չեք բերել: Այդ դեպքում թույլ տվեք սովից մեռնող գաղթականությանն առնեմ, տանեմ Կարին, Բիթլիս, Մուշ, տանեմ իրենց հողերի վրա բնակեցնեմ:
— Իրավունք չկա,— զարմանալով հայ գեներալի անկեղծությունից, հեզ ասաց գեներալ Դեյվին:— Պետք է սպասել: Ասելս այն է, միսթեր գեներալ, որ նման հարցերը որոշվում են միջազգային կոնգրեսներում: Ներեցեք, սակայն...
Անդրանիկը բացեց խցիկի դուռը:
— Հեռացեք, պարոն գեներալ: Մոռացեք Հայաստանի ճանապարհը:
Նրա ետևից թափով փակեց դուռը:

Արևն արդեն թեքվում էր:
Անդրանիկը դուրս եկավ ծխամած խցից, հետը՝ Վարդան Շահպազը, Գրիգոր Տերտերյանը, Քաջունին և իր զարմիկ Երվանդը:
Համաքայլ անցան տաճարի ավագ դռան մոտով: Ներսից կարծես լսեց կաթողիկոսի ձայնը: Երեկ ինքը իր զորամասի ամբողջ զենքը հանձնեց կաթողիկոսին:
— Դրա տերը միայն ժողովուրդն է, վեհափառ: Աստված չանի, եթե վտանգ լինի, այդ զենքով զինեցեք ազգը:
Պարիսպների այն կողմից տաք քամին ձիերի թանձր հոտ բերեց: Բայց ձիու վրնջոց չլսեց: Երեկ իր զորամասի ձիերը անուրդով վաճառեց կառավարությանը...
Գետնին ընկած արևի ստվերը մեռել փաթաթելու պատանքի էր նման:
Ձիապահ Արշակը մոտեցրեց Անդրանիկի ձին:
— Փաշա, ուտքդ պագնեմ, գոնե քո ձին հետներս տանենք Եվրոպա:
— Շատ ես խոսում, — շպրտեց Անդրանիկը: — Ջավզակ ես դարձել:
Ձիապահը երկու ձեռքով բռնեց գլուխը:
— Ինձ թաղիր, պրծիր էլի, փաշա...
Վանքի զանգերն սկսեցին ղողանջել՝ մեռելաթաղի թախիծով: Անդրանիկը Քաջունուն ակնարկ անելով ասաց.
—Գնա, ասա, թող զանգերի ձայնը կտրի:
Զորքը լուռ, անշարժ ձգված դիմավորեց իր զորավարին: Բոլորի հայացքները նրան էին ուղղված: Անդրանիկի ձիու ունգերից, որ զորքի ձիերից միակն էր, որ պահել էին, կրակ էր ժայթքում: Կարծես ձին ևս զգում էր, որ մոտենում է ամեն ինչի վերջը:
Անդրանիկի ձայնը նույնն էր, ինչ երեսունհինգ տարի առաջ՝ Սասունի լեռներում: Հրա՞շք կատարվեց՝ կորցրածը ետ գալով: Երևի:
— Դե՛, զինվորներս, եղբայրներ: Ահա եկել է բաժանման պահը: Ուր որ գնաք, բարի ճանապարհ ձեզ: Կամքովս չէ այս բաժանումը, նաև ոչ ձեր ցանկությամբ, այլ՝ ստիպողական: Եթե ձեզնից որևէ մեկին դառնություն եմ պատճառել, թող ների ինձ:
Զորքը հեկեկաց միանգամից: Արտասվում էին նաև վեհարանի ու մայր տաճարի մոտ խռնված հոգևորականները:
Անեծքի պես ահազդու դարձավ Անդրանիկի ձայնը:
— Ընկածներին երանի... Նրանք խառնվեցին մայր հողին: Մենք չհասցրինք խնկով ու աղոթքով մեռնված շիրմաքարեր դնել նրանց վրա, աղոթք ու սաղմոս չասացինք նրանց հիշատակին, այլ միայն հայոց աշխարհի անտեր քամին սուլեց՝ փայփայելով նրանց սև ու սիրուն գանգուրները:
Անդրանիկի հրամանով Երվանդ Քաջունին զինվորներին «Ազատական թուղթ» բաժանեց, որ նախօրոք տպագրել-պատրաստել էին: Ծրարների մեջ դրել էին նաև երկու հարյուրական ռուբլի դրամ, որ ձիերի վաճառքից էին ըստացել: Միայն այդքան, իսկ հացի փոխնը ուր ռուբլի էր:
Անդրանիկը խեղդվում էր ցավից՝ զորքը ցրվում է: Հնարավո՞ր է նման անխղճություն՝ ցրել կուռ ու կազմ, կռիվներում փորձված զորքը: Տասնհինգ օր

ինքն սպասեց, գուցե թե կառավարությունն առաջարկի զորամասը չցրել, հանձնել հանրապետությանը: Բայց նման առաջարկ չեղավ. լիներ՝ կաներ: Հանրապետության նախարարներից ոչ ոք չեկավ իր մոտ:

Ծավը պոռթկաց կերկերուն:

— Արդեն ազատ եք, զինվորներս: Գընացեք՝ ուր կկամենաք: Միայն, մեր տառապած հողի սիրույն, չլքեք մեր հայրենիքը: Հնարավոր է, որ հեռուներում ապահով լինեք: Բայց օտարության մեջ կուշտ ապրելը լեղի է, իմացեք: Լիքը ախոռը, ուր անասունները կուտեն ու կապրեն, հայրենիք չէ: Չլքեք ձեր հայրենիքը: Երբեք չմոռանաք Առաքելոց վանքի կարոտած կանչը…

Զինվորները խոնվեցին, աղմկեցին, ապա կարծես ընկճվելով երկնքի ծանրությունից, լուռ մոտեցան իրենց դրոշակին ու համբուրեցին նրա մետաքսը:

Դրոշակը արցունքներից թացանալով ծանրացավ:

Բոլորին թվաց, թե հազար յոթ հարյուր տարվա տաճարի գմբեթները խոնարհվեցին, թե Մասիսի ձյուներին սառցի նոր շերտեր ավելացան:

Անդրանիկի ձայնն այս անգամ հնչեց կերկեր.

— Գնացեք բարյավ, եղբայրներ: Մենա՛ք, մնա՛ք…

Ստեպ-ստեպ նայում էր մեծ դարպասին՝ գուցե մեկնումեկը գա զորքին տեր կանգնելու: Փակ դարպասները չէին բացվում: Դեռ Դավալուից խնդրագիր էր ուղարկել գեներալ Թոմսոնին՝ թույլ տվեք Արևմտյան Հայաստանի գաղթականությանը տանել տեղավորել իրենց տեղերում: Պատասխան չստացավ: Փակ դարպասները չէին բացվում:

Զին ճիգով շրջեց և, ընկնելով նրա աղեղված բաշին, հետ եկավ:

Խցի առաջ, քարի վրա նստած ողբում էր ձիապահ Արշակը: Անդրանիկի ձին խոնավ պռոշները քսեց նրա բաց գլխին: Անդրանիկը ձիուց իջավ:

— Սթափվիր, Արշակ: Կատարվեց սատանայի կամեցողությունը: Քաջունուց ստացիր «Ազատականը» և մեկնիր ուր կամենաս: Գուցե թե գնաս Քանաքեռ՝ կընոջդ ու որդուդ մոտ:

Պինդ գրկեց ձիապահին, համբուրեց գլուխը և արագ հեռացավ:

(շարունակելի)

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

# Արմատները գնում են դարերի խորքը

(«Հայաստանի կենդանական աշխարհը» անտիպ հատորից)

Պարսիկները անակնկալ կերպով հարձակվում են խաղաղ ննջող հայկական գյուղի վրա: Անիկ անունով մի հուրի-փերի աղջիկ անկողնուց դուրս է թռչում և ճերմակ շապիկով, թել-թել մազերը թիկունքին շաղ տված՝ որպես մի ոգի, հայտնվում է թշնամու մեջ: Նախապաշարված պարսիկ զինվորներին թվում է, թե երկնքից իջավ այդ էակը. նրանք դադարեցնում են հարձակումը և բերանները բաց նայում ժպիտը դեմքին, կաքավելով առաջ գնացող «ոգուն»: Հայ գյուղացիներին էլ թվում է, թե երկնքից իջել է իրենց պահապան հրեշտակը: Սիրտ են առնում, վրա տալիս թշնամուն, կոտորում: Պարսիկներն ուշքի են գալիս, հասկանում են, որ խաբված են և նահանջելիս կտրում են աղջկա գլուխն ու նետում Ողջի գետը: Դիակի ընկած տեղից մի արծիվ է թռչում:

— Խփեք, հայ աղջիկը կախարդ էր, հիմի էլ արծիվ դարձավ, խփեք,— հրամայում է պարսիկների մեծը: Բայց արծվին գնդա՞կ կհասնի: Թշնամուն վռնդելուց հետո գյուղը խաղաղվում է, և այդ ժամանակ մի արծիվ սավառնում, պըտույտներ է գործում գյուղի վրա: Մարդիկ համոզված են լինում, որ դա Անիկն է, դարձել է արծիվ: Ու աղջկա մայրը ամեն անգամ երկնքում արծիվ տեսնելիս ձայն է տալիս. «Տուն արի, Անիկ ջան, բա սոված չե՞ս»: Այդ օրվանից գյուղի անունը մնաց Արծվանիկ, այսինքն՝ արծիվ-Անիկ:

Այս ավանդության մեջ մեր շոշափած հարցի առումով ուշադրության արժանին այն է, որ թե պարսիկներն են համոզված, որ աղջիկը արծվի փոխվեց («արծիվ դարձավ, խփեք»), թե այն, որ «գյուղում բոլորն էլ համոզված են լինում, որ

(Անիկը) արծիվ է դարձել»: Նույնիսկ սնահավատ մայրը չի կասկածում, որ երկընքում սավառնողն իր աղջիկն է: Սըրանք մնացորդ-բեկորներն են մեր նախնիների այն մեծ նախապաշարմունքի, թե մարդը իր մահից հետո փոխարկվում է որևէ կենդանու, թռչունի և շարունակում իր գոյությունը նրա մեջ, նրա կերպարանքով: Միևնույն ժամանակ, սա հոգու անմահության գաղափարն է: Անիկի հոգին տեղափոխվում և վերաբնակվում է արծվի մեջ:

Կերպարանափոխության այս իմաստն ունի նաև մեր ժողովրդական «Մարգար արծիվ» հեքիաթը:

Այս ամենը, անշուշտ, առնչվում են այդ թռչունի երբեմնի պաշտամունքի հետ:

Արծվի հնագույն քանդակները և պատկերումները կավի, մագաղաթի վրա՝ մեծ մասամբ գալիս են նրա պաշտամունքի ժամանակներից: Ամենահին քանդակներից, որ հայտնաբերվել է պատմական Հայաստանի հարավային սահմաններից ոչ հեռու, Էլամի պեղումների ժամանակ գտնված արծիվն է, որ պատկերված է մի անոթի վրա՝ թևատարած ու հզոր: Այդ արդեն այն հեռավոր շրջանի գործերից է, երբ մեր նախնիք՝ հայասիրները, դեռևս ոչ ազդեցիկ ցեղախումբ էին կազմում իրենց հարևան հզոր խեթերի և էլամական ցեղերի կողքին ու ոչ միայն ենթարկվում էին նրանց արշավանքներին, այլև ազդվում էին նրանց քաղաքակրթությունից, հետևապես և կերպարվեստից: Էլամի արծվի նման թևատարած ու հզոր թռչուններ հետագայում երևան եկան հին հայերի կերպարվեստում և մանրանկարչության մեջ: Այդպիսին է, օրինակ, 12-րդ դարում Կիլիկիայի մի անհայտ նկարչի ձեռքով նկարված այն արծիվը, որ թևերը բացած ու շեշտակի նայում է դեպի առաջ, այն կետին, ուր պատրաստվում է սլանալ (Մատենադարան, ձեռագիր № 7737), ինչպես և 1123 թվականին Գլաձորում Թորոս Տարոնացու տաղանդավոր վրձինի արտադրանքը. կենաց ծառի գլխին կանգնած մի կատաղի արծիվ բացել է թևերը և հրացայտ աչքերով նայում է դեպի առաջ, հավանաբար որս է նկատել (ձեռագիր № 6289):

Որսը հափշտակող արծիվ էր նկարված Պռոշյանների իշխանական տոհմի ապարանքի ճակատին և դրոշի վրա: Երբ Գեղարդ գնաք, ուշադիր նայեցեք իշխանական հանգստարանի ճակատի բարձրա-





քանդակին: Տոհմանիշի վրա մի արծիվ իր հզոր ճիրանների մեջ է առել խոյին: Ի՞նչ իմաստ են դրել 13-րդ դարի 80-ական թվականներից սկսած Գեղարդը տիրապետող իշխանները իրենց տոհմանիշ-զինանիշի մեջ: Գուցե հոխորտա՞նք թըշնամու դեմ, թե՝ «Մենք արծիվ ենք, դուք՝ անշուշտ, բայց և չենք կասկածում, որ սոսկ ոչխար մեր դեմ...»: Այդ այդպես է, Պռոշյանների տոհմանիշն իր արմատները ունի հին-հին դարերի խորքերում, թերևս նախապատմական ժամանակներում:

## ԻՆՉ Է ՊԱՏՄՈՒՄ ՀՆԱԴԱՐՅԱՆ ԳՈՏԻՆ

Երիտասարդ հնագետ Ստ. Եսայանը 1966 թ. հունիսից սկսեց պեղել Իջևանի շրջանի Ենոքավան գյուղի ծայրի բլրակը, որին տեղացիները Աստղաբլուր անունն են տվել: Շատ գերեզմաններ հայտնաբերվեցին այդտեղ, որոնք վերաբերում էին մեր թվականությունից առաջ 10-րդ, 8-րդ, 6-րդ և 5-րդ դարերին: Քսանհինգ գերեզման պեղեց հնագետների արշավախումբը, շատ իրեր հանեց գերեզմաններից, բայց իմ ուշադրությունը գրավել է բրոնզե այն գոտին, որ հայտնաբերվեց 8-րդ դարի մի դամբարանից: Այդտեղ, անշուշտ, ցեղապետն էր թաղված, որովհետև այդպիսի շքեղ գոտի միայն նա կարող էր կրել:

Բայց ինչո՞ւ այդ գոտին գրավեց մեր ուշադրությունը: Որովհետև նրա վրա ծայրեիծայր փորագրված են որսի տեսարաններ: Որս, որ կատարվում էր Արևի աստվածության հովանավորությամբ: Գոտին ունի 90 սմ երկարություն, շատ լայն է (15 սմ) և իր ժամանակի համար կարելի է արվեստի գլուխգործոց համարել· զարմանալի նրբակերտ են նրա նախշերը, վարպետությամբ են փորագրված մարդիկ, որոնք զինված են լայնալիճ աղեղներով և երկար տեգերով:

Շնորհքով են կերտված նաև ձիերը, որոնք լծված են մարտակառքերին: Շատ կարևոր է իմաստը, խորը իմաստ կա ներկայացված որսի տեսարաններում: Ի՞նչ իմաստ: Բացատրեմ:

Որսորդները բաժանված են երկու խըմբի, մեկը արշավում է դեպի աջ, դեպի դիմացի փառավոր եղջյուրներ ունեցող եղջերուն, մյուսը հարձակվում է հակառակ ուղղությամբ, մի այլ եղջերվի վրա: Դեպի աջ արշավողները մարտակառքերի վրայից արձակել են իրենց նետերը, որոնցից մեկը խրվել է կենդանու թիկունքը: Դեպի ձախ արշավողների արձակած նետերը վրիպում են, աննպատակ ընկնում են գետին: Մարդիկ նոր նետեր են դրել աղեղների մեջ, բայց այլևս չեն «կըրակում», քարացած նայում են եղջերվին: Ինչո՞ւ չեն կրակում և ինչո՞ւ արձակած նետերը այդպես անշնորհքաբար վրիպում են: Որովհետև... եղջերվի տակ հորթիկ կա, որ ծծում է մորը:

Մայր եղջերուն իսկի փախչելու փորձ էլ չի անում· տեղում կանգնած, ոտքերը լայն դրած՝ ստինքները տրամադրել է իր սիրասուն ձագին: Ահա ինչու մարդկանց ձեռքը չի բարձրանում այդ անլեզու մոր վրա... Ահա ինչու արձակված նետերը անվնաս ձողիկների նման թափվում են գետին՝ նպատակակետին չհասած: Մայրը պիտի ապրի, որպեսզի ձագն էլ ապրի, սերունդը շարունակվի: Ահա ինչպիսի մեծ ճշմարտության են հասել վայրենի համարվող մեր նախնիք, սրանից շուրջ 2700 տարի առաջ:

Այստեղ ակնհայտ է մայրության պաշտամունքը, մայր, որ արարում է, ստեղծում է, սերունդներ է տալիս, հետևապես «մեղք» է նրա վրա ձեռք բարձրացնելը:

Այդ պաշտամունքը կարող է գալ և տոտեմիզմից,— թերևս եղջերուն տոտեմ կենդանի է եղել այդ ցեղի համար: Այդ դեպքում ինչո՞ւ անողոքությամբ սպանում են արուին: Ուրեմն այս դեպքում մայրության պաշտամունքը բխում է կենսական անհրաժեշտությունից, այն տնտեսական դրդապատճառներ ունի· պիտի ապահովել վայրի կենդանիների վերարտադրությունը՝ ելնելով հենց ցեղի կենսական շահերից· չէ՞ որ դեռևս անցյալ դարում Ամերիկայի հնդիկները նույնպիսի խանդով պաշտպանում էին բիզոններին և ցեղի շարքերից վռնդում էին ու կորստյան դատապարտում ներկայիս տերմինով այն «որսագողերին», ովքեր բիզոնի որս էին կատարում նրանց ձագաբերության շըրջանում և առհասարակ նշանակված ժամկետից շուտ:

Մեծ իմաստ ունեցող այն տեսարանը, որ մեր նախնիք քանդակել են բրոնզե գոտու վրա, բարոյական խրատ է կարդում նույնիսկ այսօրվա մարդուն...Ենոքավանի հին բնակիչը կարծես ձայն է տալիս հազարամյակների խորքից·

— Ձեռքդ ետ տար, ո՞ւր ես կոտորում: Ո՞ւմ ես կոտորում, ախր դրանք քոնն են...

Իսկ եթե զենք ես վերցրել, գոնե մորն ու ձագին խնայիր, ագահ մարդ...



# «ՁԵԶՊԵՄՆԵՐԻՆ

ԱՐԱ ԹԱԴԵՎՈՍՅԱՆ

19-րդ դարի 70-ական թթ. թուրքական տիրապետության տակ էին գտնվում Բուլղարիան, Մակեդոնիան, Բոսնիան, Հերցեգովինան, Ալբանիան, Սերբիան, Ռումինիան, Էպիրոսը, Թեսալիան, Արևմտյան Հայաստանը, Քուրդստանը, Սիրիան, Պաղեստինը, Լիբանանը, Արաբիայի մի մասը, Լիբիան, Եգիպտոսը, Թունիսը...:

«Թուրքերը նման չեն ոչ Հնդկաստանի հեզ մահմեդականներին, ոչ Սիրիայի ասպետ սալահէդդիններին և ոչ էլ Իսպանիայի քաղաքակիրթ մավրերին: Ուր մըտել են նրանք, այնտեղ թողել են արյունաներկ հետքեր, ուր հաստատել են իրենց տիրապետությունը, այնտեղ խեղդվել է քաղաքակրթությունը»,— գրում էր Անգլիայի վարչապետ Գլադստոնը, իսկ Կ. Մարքսը եզրակացնում էր. «...փաստն այն է, որ հարկ կլինի այս կամ այն ձևով թուրքերին վերջ դնել»:

Սակայն օսմանյան կայսրության վիճակված չէր կործանվել: Բարբարոսության այդ որջն իրենց հզոր հովանու տակ էին առել Ցարական Ռուսաստանն ու քաղաքակիրթ Եվրոպան: Եվ հպատակ ժողովուրդներին մնում էր միայն սեփական ուժով նվաճել ազատությունը:

Որ եվրոպական պետությունների վրա հույս դնելու փոխարեն պետք է համընդհանուր զինված պայքարի ելնել, հայ հասարակական առաջադեմ գործիչները, ավաղ, ուշ գիտակցեցին՝ 1877—1878 թթ. ռուս-թուրքական պատերազմից հետո միայն, երբ բալկանյան ժողովուրդները՝ բուլղարները, ռումինացիները, մեկ ու կես մլն. սերբերը, հազիվ 200 հազարի հասնող չեռնոգորցիները, օգտագործելով բոլոր հուսալի և անհուսալի միջոցները, զենքով ու ժողովրդով հետ խլեցին իրենց ազատությունն ու անկախությունը, իսկ «Հայկական հարցը»՝ որպես Բեռլինի դաշնագրի 61-րդ հոդված, կախվեց օդում՝ ըսպասելով հանդիպակաց քամու:

Չպետք է անտեսել, իհարկե, նաև այն, որ բալկանյան ժողովուրդների համար պայմաններն ավելի նպաստավոր էին: Քրիստոնյա, ցեղակից ժողովուրդներ էին մի տարածքի վրա՝ շրջապատված եվրոպական տերություններով, որոնցից եթե օգնություն էլ չէին ստանում, այնուամենայնիվ այդ հույսը փայփայում էին յուրաքանչյուր ընդվզման պահին, և, վերջապես, նրանց բարոյական աջակից էր և ռեալ օգնություն էր ցույց տալիս Ռուսաստանը:

Սրանք հանգամանքներ էին, որոնք նըպաստում էին Բալկաններում ազատագրական շարժման արագ հասունացմանն ու աճին, և այն ժամանակ, երբ Բալկաններում հայդուկային տակտիկան անցած էտապ էր դարձել, ժողովուրդը կազմակերպվել ու ելել էր զանգվածային ելույթի,

Հայաստանում նոր միայն ֆիդայական շարժումն էր ծավալվում:

Եվ չկար հայ իրականության մեջ մի միություն կամ կուսակցություն, որը կարողանար Հայաստանում կազմակերպել ազգային-ազատագրական համընդհանուր պայքար ծավալելու գործը: Ուստի և այն, ինչ արեցին հայ ֆիդայիները, միմիայն փառքի է արժանի: «Եթե հայերս իրավունք ունենք մեր անցյալը հերոսական անվանելու, և եթե հարատևել ենք որպես ժողովուրդ առայսօր, ապա այդ բանում մենք մեծագույն չափով պարտական ենք նաև մեր դարավոր հերոսապատումի հավերժ անմոռանալի դյուցազուններից մեկին՝ Անդրանիկին»,— Մարտիրոս Սարյանի այս խոսքերը կարելի է վերագրել բոլոր ֆիդայիներին, որոնցից մեկն էլ սեքարեցի Սաքոն էր՝ «իր ազգի և աշխարհի բոլոր հալածվածների համար գլուխը դրած մի խենթ»:

Սեքարեցի Սաքոն՝ Սարգիս Սարիբեկի Ծովանյանը (Ծովիանյան) ծնվել է 1870 թ. հունվարի 14-ին Իջևանի շրջանի Սեքար



# ՄԻՇՏ ԵՐԱՆԻ...»

գյուղում: 20 տարեկանում, 1890 թ. անցնում է Արևմտյան Հայաստան ու միանում ֆիդայիներին: Սա ֆիդայական շարժման նոր շրջանն էր:

1890-ական թթ. հայ ժողովրդի համար Մեծ եղեռնին նախորդող ամենածանր տարիներն էին: Համիդյան ջարդերի հետ մեկտեղ ուժեղացել էր նաև հայերի ազատագրական շարժումը: Նոր ուժեր հավաքագրելու նպատակով հայ հեղափոխական գործիչները օգնություն էին փնտրում Կովկասի և Արևելյան Հայաստանի հայության մեջ: Հենց նրանցից մեկի՝ 1893 թ. թուրքական իշխանության կողմից կախաղան բարձրացված նշանավոր ֆիդայի Մարգար վարժապետի (Մարգար Ամրոյան) հավաքագրած խումբ մտավ սեքարեցի Սաքոն: Մարգար վարժապետի ղեկավարությամբ էլ Սաքոն մասնակցեց ինքնապաշտպանական առաջին կռիվներից մեկին՝ Տարոնի Վարդենիս գյուղում: Սա նրա առաջին մարտն էր թուրքերի դեմ:

Այնուհետև մասնակցելով Մուշի, Սասունի, Վանի, Էրզրումի ինքնապաշտպանական հերոսական կռիվներին Սաքոն քաջի համբավ ձեռք բերեց, փառքով պըսակելով թե՛ իր, թե՛ իր ծննդավայրի անունը: Նրա մասին արդեն երգեր էին երգում, նրա անվան ահից Ղազախի թուրքերը սիրտ չէին անում Սեքար մտնել իր բացակայության ժամանակ էլ:

1895—1896 թթ. ահավոր ջարդերից հետո, երբ ավելի քան 300 հազար հայեր զոհվեցին, վրեժով լցված ֆիդայիների մի խումբ կազմակերպեց Խանասորի նշանավոր արշավանքը: 1897 թ. հուլիսի 25-ի լուսաբացին, մոտ 300 ֆիդայիներ (որոն-

ցից 100-ը՝ ձիավոր), մոսին հրացաններով զինված, հանկարծակի հարձակվեցին Պարսկաստանի սահմանի մոտ գտնվող Մազրիկ քրդական ցեղի մի ավազակախմբի վրա, որին գլխավորում էր արյունարբու հայակեր Շարաֆ բեյը: Ծատախցիների ջոկատի մեջ էր սևքարեցի Սաքոն, որը հերոսացավ այս կռվում: Քրդերին մեծ ջարդ տվին: Հայերից էլ զոհեր եղան: Զոհվեց նաև հայտնի ֆիդայի ագուլեցի Կարոն: Ժողովուրդը երգեր հորինեց Խանասորի կռվի հերոսների մասին՝ «Խանասորի կռվում», «Խանասորի մարտը», «Խունկ» և այլն: Նրանցից մեկում այսպիսի տողեր կան.

«Զեզպեսներին միշտ երանի,
Դուք եք հույսը Հայաստանի»:

Պատմագրության մեջ ցայսօր երկակի կարծիք կա Խանասորի արշավանքի նկատմամբ. ոմանք արդարացնում են, ոմանք՝ դատապարտում: Պետք է ընդունել սակայն, որ բարբարոսության դեմ կռվի բոլոր միջոցները ու ձևերն են արդարացի և օրինավոր:

1899 թ. թուրքական ոստիկանությունը ձերբակալեց Սաքոյին: Սարքվեց մի հապճեպ դատավարություն, և դատարանը նրան դատապարտեց 101 տարվա ազատազրկման՝ ֆիդայական կռիվներին մասնակցելու համար: Մեկ տարի հետո «նոր փաստերի» հիման վրա Սաքոն մահվան դատապարտվեց, և Մուշի բանտում ընտած սպասում էր ռուսական ու թուրքական իշխանությունների բանակցություններին: 1901 թվականին, երբ Անդրանիկը արդեն կռվել էր Մշո Առաքելոց վանքի իր կռիվը, Սաքոն ռուսական կառավարության պահանջով, որպես ռուսահպատակ, աքսորվում է Ռուսաստան: Այստեղ էլ նա շարունակում է իր հայրենասիրական գործունեությունը:

Սաքոն մեծ ժողովրդականություն էր ձեռք բերել և վայելում էր հայ հեղափոխական ու հասարակական գործիչների հարգանքն ու վստահությունը, անձնական սերտ հարաբերություններ ուներ նրանցից շատերի հետ: Նույնիսկ նրա բանտում եղած ժամանակ ֆիդայիները նրանից խորհուրդ էին հարցնում տարբեր առիթներով: Սաքոն է Զորավար Անդրանիկին և Հովհաննես Թումանյանին ծանոթացրել միմյանց հետ՝ հիմք դնելով երկու մեծ հայրենասերների հետագա համագործակցությանն ու բարեկամությանը: Այդ մասին Զորավար Անդրանիկն իր «Վերհիշումներ բանաստեղծ Հովհաննես Թումանյանի կյանքեն» հուշագրությունում գրում է. «1904-ին առաջին անգամ ըլլալով տեսա և ճանչցա զայն (Հովհաննես Թումանյանին— Ա. Թ.) իր բնակարանին մեջ սևքարեցի Սաքոյի միջոցով»:

1905—1906 թթ.՝ Անդրկովկասում բռնկված ազգամիջյան կռիվների ժամանակ Սաքոն ուղեկցում էր Հովհաննես Թումանյանին հայկական ու թուրքական գյուղերը խաղաղության սպիտակ դրոշ պարզած, բորբոքված կրքերը հանգստացնելու համար:

Այս ընթացքում էլ Սաքոն ջոկատներ էր հավաքագրում՝ մեկնելու Պարսկաստան և միանալու Եփրեմ խանին, մասնակցելու այնտեղ սկսված հեղափոխությանը, սակայն այդ չվիճակվեց նրան: Հիվանդանալով խոլերայով՝ 1908 թ. նոյեմբերի 13-ին 38 տարեկան հասակում Երևանում վախճանվեց:

Կարսից «Մշակի» խմբագրությանը՝ հասցեագրված մի թղթակցության մեջ ասվում է, որ նոյեմբերի 30-ին տեղի Ս. Աստվածածին եկեղեցում սևքարեցի Սաքոյի համար հոգեհանգիստ կատարեցին, հավաքված հայերը «դրվատեցին նրա անվեհեր քաջությունները, ազնիվ հատկությունները և դուրս բերին որպես անկեղծ հայ, ազնիվ մարդ, տակտով գործող հեղափոխական, անշահասեր գործիչ և անձնվեր մարտիկ և ցանկություն հայտնեցին, որ հայ ազգի միջից այդպիսի զավակներ անպակաս լինեն»:

Այնուհետև թղթակիցն իր դժգոհությունն է հայտնում, որ հոկտեմբերի 29-ին, երբ Խրիմյան Հայրիկի հոգեհանգիստն էր կատարվում, մասնակիցները քիչ էին և ճառախոսներ էլ չկային. «Մի՞թե հանգուցյալ Հայրիկը,— հարցնում է նա,— սևքարեցի Սաքոյի չափ էլ ծառայություն չի արել յուր ազգին»:

Խրիմյան Հայրիկի ծառայությունները, իհարկե, փոքր չեն, սակայն հայ ժողովրդի համար դա մի ժամանակաշրջան էր, երբ խրիմյան հայրիկներից բացի նաև սևքարեցի սաքոներ էին անհրաժեշտ:

Տարիներ առաջ Սաքոյի հարազատները Սևքարի գերեզմանատանը մի հուշարձան կանգնեցրին նրա հիշատակին: Պատվանդանի վրա հերոսի կիսանդրին է՝ դեմքի ու կեցվածքի խրոխտ ու առնական տեսքով: «Որտեղ տեսա սևքարեցի՝ քո պատճառով շատ սիրեցի»,— երգում են նրա մասին այսօր էլ:



# Գուրգեն Մահարի
1903—1969

## Պոետ

Մորս

Մի ջինջ գիշեր է եղել,
Մի ջինջ գիշեր,
Մայրս՝ ջահել մի եղեգ,
Հայրս՝ ուժեղ:

Բարդիներն են երգել
Ջրերի մոտ,
Ամեն ինչ խորն է եղել,
Ամեն ինչ հորդ:

Ու մորս հուզել է
Բարդիների երգը,
Իսկ դաշտերում փիրուզե
Ծղրիդներն են երգել...

Ախ, ծղրիդներ շատախոս՝
Լուսնկայի հետ,
Ծնվեցի ձեր պատճառով
Այսպես պոետ...

## «Խեղճ Լիլիան»

Դու ապրում ես, դու ապրում ես, ու ես դեռ քեզ հիշում եմ,
Հիշում եմ դեռ քեզ,
Պաղ մարմարե սանդուղներից իջավ անշող աշունը,
Իջավ ու երգեց:

Անձրևածեծ մայթին ընկավ մի թիթեղե ցուցանակ՝
Ճառաչով մի խոլ,
Մի կին մթնում կանգնած, շոյեց մատները բաբախ
Ու ժպտաց տխուր:

Հետո մշուշ ու ստվերներ, ու մշուշում սպառող
Մի լապտեր կարմիր,—
Դաշնամուրը խռպոտ ու ննգ, դաշնամուրը խոլ մի հազով,
Ու մի պաղ մարմին:

Մի կանաչ կին, մի ոստիկան... Տարան նրան փողոցով
Մի մութ, զարտուղի,
Ու լալիս են նրա սրտում ձները նուրբ ու խոցող
Ռեմբո Արտուրի...

ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ

# ՀՈՐԴԱՌԱՏ ԱՆՁՐԵՎՆ ԷԼ ՉՕԳՆԵՑ

Լուսանկարը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

Բացեք Հայաստանի աշխարհագրական քարտեզը: Գտեք Հրազդան գետի վտակ Մարմարիկը ու մտովի գնացեք հոսանքն ի վեր: Քարտեզի վրա մի վայրկյանում կարելի է հասնել ակունքին, որ գտնվում է Ծաղկունյաց ու Փամբակի լեռնաշղթաների հատույթում: Բայց ահա մենք, մի փոքր խմբով ճամփա ենք ընկել ու ոտքով բարձրանում ենք, ինչքան հնարավոր է՝ մոտենալու գետի ակունքին:

Գնում ենք անտառի փեշերով: Սեպտեմբերի սկիզբն է. դեռևս դեղին գույնը չի խփել անտառին, և համատարած կանաչ սաղարթի մեջ արոսենու կարմիր, խոշոր ողկույզները շքեղ զարդ ու զարդարանքի են նման:

Ջուրը գնալով նեղանում, նեղանում է, վեր է ածվում սուրանկյուն եռանկյան: Երկու կողմից անտառապատ, բարձր լեռներ են. տեղ-տեղ ցցված քարաժայռերը տեսարանն ավելի վայրի ու հզոր են դարձնում:

Այսպիսի լռություն որտե՞ղ կգտնես: Մի երկու օր առաջ այս ձորում վերջին անգամ արձագանքեց պիոներական շեփորի ձայնը ու լռեց:

Քիչ էլ ենք առաջանում և հանկարծ, ինչ-որ աղմուկ է հասնում մեր ականջին: Ահա և աղմկարարը՝ ջրվեժը: Եղինջի մարդաբոյ, կծան ցողունները, փշոտ մասրենիներն ու մոշի թփերը դանդաղեցնում են մեր երթը: Ջրվեժին մոտենալու համար անցնում ենք գետեզրյա կածաններով, թռչում սալաքարերի վրայով: Ակամա մտածում ես. առանց դժվարություններ հաղթահարելու հնարավոր չէ հասնել ու վայելել բնության անաղարտ գեղեցկությունը:

Ոչ շատ բարձրից, խոշոր քարաժայռերից պոկվելով՝ ջուրը դղրդոցով գահավիժում է, խփվում ցածի ժայռաբեկորներին, իր թավ ձայնով երգելով ջրվեժի խրոխտ երգը:

Ցածում ավազան է գոյացել, և եթե ուզում ես տեսնել ջրի անդադրում աշխատանքը, մոտեցիր, ուշադիր զննիր.

տարբեր չափի ու ձևի, տարբեր գույնի անհաշիվ քարեր են կիտված ջրվեժի ոտքերի տակ: Ջուրը խփվում է դրանց, շուռ ու մուռ տալիս և ամեն վայրկյան «մշակում», ձևափոխում: Ջուրը քշում տանում, հեռացնում է մարմարի գույնզգույն կտորտանքը, տեղ բացելով ավելի բարձրից հոսանքն ի վար լողացող նոր բեկորների համար:

Փաստորեն մենք գտնվում էինք Մարմարիկի վերնագավառում: Մի երեք կիլոմետր ավելի վեր աղբյուրներ են բխում: Այդ աղբյուրների և Փամբակի լեռների ձնհալի ջրերով է սնվում Մարմարիկը:

Եվ այսպես, մենք տեսանք գետի ակունքը, որտեղ ջուրը անթերի մաքուր էր, սառն ու համեղ:

Այդտեղից ձորն ի վար հոսելով-հոսելով, Մարմարիկը 42 կիլոմետր ճանապարհ է անցնում, մտնում Հանքավան գյուղը, անցնում «Հանքավան» առողջարանի, «Հանքավան» ջրի գործարանի կողքով, ապա հոսում Թաքառլու, Մեղրաձոր, Աղավնաձոր գյուղերի մոտով: Գետի ափերին կան նաև պիոներական ճամբարներ, հանգստյան տներ…

Ամռան շոգ օրերին, հատկապես, շաբաթ ու կիրակի, քանի՜-քանի ավտոներ են հանգրվանում Մարմարիկի ափերին: Մարդկանց գրավում են զով օդը, գեղեցիկ բնությունը, հանքային բուժիչ ջրերը: Եվ Մարմարիկը, թող թույլ տրվի ասել՝ շրջափակման մեջ է ընկնում Ջրառատ գյուղից սկսած, որտեղ գետը միանում է Հրազդանին, մինչև նրա ակունքը, մինչև ջրվեժը, ուր մենք կանգնած ենք հիմա: Մարդիկ ուրախանում են, պար բռնում, ծաղկեփնջեր կապում, խարույկ են վառում խորովածի համար: Իսկ հետո, մայրամուտին, թարմացած, զվարթացած վերադառնում են իրենց տները: Ինչ խոսք, նրանց մեջ կան բնության իսկական սիրահարներ, որոնք իրենց ետևից մի ավելորդ ծեղ անգամ չեն թողնում գետափին կամ ծառերի տակ: Դժբախտաբար ավելի շատ են նրանք, ովքեր Մարմարիկի ջրում ու նրա ափերին ամենատգեղ հիշատակներ են թողնում: Լսեք, ուրեմն, ականատեսիս խոսքը:

Ջրվեժ այցելելու օրվա շարունակությունը ավարտվեց հետևյալ կերպ.

Ճաշից հետո ամպերն սկսեցին գոռգոռալ: Օրը տաք էր, երկինքը՝ մեծ մասամբ կապույտ, և թվում էր, թե ամպերն իզուր են իրար անցել: Հանկարծ խոշորահատիկ անձրև տեղաց, ապա փոխվեց կարկուտի: Մի քանի րոպեում դիմացի կանաչ տարածությունը սպիտակեց: Հազիվ 15—20 րոպե տևեց կարկտախառն անձրևը. երկինքը պարզեց, արևը դուրս եկավ, օրը խաղաղվեց:

— Գետի կողմը նայե՜ք, գետի կողմը՜,— լսեցիահաբեկված մի ձայն:

Պատուհանից արդեն երևում էր, թե Մարմարիկն ինչպես է կատաղել-փրփրել: Դուրս եկանք: Ա՜յ քեզ հեղեղ: Ջուլալ ջրերի հետքն անգամ չէր մնացել: Գետի հունով ցեխաջուր էր հոսում, քար, ծառ ու ճյուղ առաջն արած գալիս: Ջուրն այնքան արագ ու այնպես աղմուկով էր խփվում ափերին, որ դրանից կարելի էր ենթադրել, թե սարերում, կարճատև, բայց հորդառատ անձրևն ինչ ավերածություն էր գործել: Մեր աչքի առաջ հեղեղը ծառեր էր պոկում, ափամերձ փուխր հողաշերտերը փլցնում:

Տարերքն ահա այսպես է լինում. բայց և այնպես մի օգուտ կստանանք, գետի հունը մի լավ կմաքրվի,—մտածում էի ես:

Այդ պահին ես մոռացել էի մի բան. չէ՞ որ հեղեղաջուրը վերին հոսանքներից քշել-բերելու է այնտեղ թափված, ջարդոտված, դեն նետված իրեր:

Երեկոյան կողմ ջուրը պակասեց, գետը իջավ. մնացին ափերի ավերածությունը և գետաքարերին կառչած նորանոր տգեղ «հիշատակներ». պոլիէթիլենային տոպրակներ, փոլգա, որով ուտելիքն են փաթաթում…

Բնության մի անակնկալ էր Մարմարիկի հորդանալը, և ես վախով եմ հիշում ավերված ամբարտակը, որը եթե փլված չլիներ, այս հորդահոս ջրին չէր դիմանալու: Իսկ թե ինչ ավերված ամբարտակի մասին է խոսքը, ես կպատմեմ մեր հաջորդ զրույցներից մեկում:

Վերջացնելուց առաջ ահա թե ինչ եմ խնդրում քեզնից, իմ պատանի բարեկամ:

Դո՛ւ, որ լսեցիր ինձ, որտեղ ուզում է ապրելիս լինես՝ Մարմարիկի ափին, Դեբեդ թե Ողջի գետերի մոտակայքում, Աղստև գետի հովտում թե այլուր, մի՛ մոռանա՝ բնության առողջությունն ու մաքրությունը նաև քեզնի՛ց է կախված: Նախ՝ ինքդ քեզ հսկիր, զգուշացրու քո քրոջը, եղբորը, քո ընկերներին… Հիշի՛ր, քո և մեր բոլորի սրտացավ ու խելացի վերաբերմունքից է կախված բնության պահպանությունն ու նրա կյանքի երկարատևությունը:

## Լեռները հայոց

Արարածներ են նախապատմական
Թվում ինձ հաճախ լեռները հայոց:
Քնով են անցել, մի օր կարթնանան,
Որ իրենց երթը տանեն աշխարհով:
Մարմնամասեր են սարալանջերը՝
Մեջքեր, գավակներ, ողնաշարներ...
Անկարգ հոտերով եկել են մի օր
Հանդ ու դաշտերի եզրերին շարվել:
Նստել են խոսկաց գետերի վրա,
Բազմել են նազուկ լճերի կողքին,
Որ ինչ է հանկարծ ծարավը անհագ
Կես ճամփին նրանց բկին չչոքի...
Ու քարացել են երկար նստելուց,
Ու լեռնացել են լռելուց երկար,
Քնել են, ե՛րբ են մեկ էլ զարթնելու,
Որ ճշտեն իրենց ճամփեքը բեկված,
Որ կրկին իրար կողահարելով,
Փարվելով իրար բիրտ ու վայրենի,
Շարժվեն հայրենի նախավայրերով,
Ժանապարհներով նախահայրերի...

## Կա մեկը, որ միշտ հետևում է քեզ...

Իմ կաղապարում ապրող մի մարդ
Ուր էլ որ լինեմ՝ ինձ է հետևում:
Նա չի նախատում,
Չի խրախուսում,
Քուն թե արթմնի՝ ինձ է հետևում:
Խորհուրդ չի տալիս,
Չի հրահրում,
Հետս չի վիճում,
Չի նեղսրտում,
Նա ամեն վայրկյան իր պարտքին գիտակ՝
Արթուն աչքերով ինձ է հետևում...
Ուզածը նրա տարիներ ի վեր
Սովորել եմ ես թարգմանել այսպես.
«Ինչ էլ որ լինի՝ դու մի մոռանա՝
Կա մեկը, որ միշտ հետևում է քեզ...»:

## Հազար խիզախներից

Հազար ճամփաների վրա
Կանգնած են հազար խիզախներ:
Ինչի էլ ձգտեն՝ կհասնեն,
Անվեհեր հազար խիզախներ:
Եթե դու նրանց հետ չես այսօր,
Ախ, գոնե ապրիր այնպես,
Որ նրանք հաճույքով կամենան
Երբևէ հանուն քեզ խիզախել...

## Ուսը ուսին որ գումարվի

Լույսը լույսին թե գումարվի՝
Լույս կլինի ավելի:
Բարին բարուն թե գումարվի՝
Սեր կլինի ավելի:
Ուսը ուսին թե գումարվի՝
Կդառնա բերդ ու պարիսպ՝
Ամուր, ինչպես լեռները մեր՝
Կերտված ժայռից ու քարից...

## Հազվադեպ պահ

Երբ Հայրենիքը շատանում մեր մեջ,
Գերազանցում է արդեն մեր ես-ին,
Երբ մենք ինքնակամ դառնում ենք ծառան
Ու սարսափով ենք խորհում իր մասին,
Ուրեմն դա այն պահն է հազվադեպ,
Երբ մենք ենք նրա փրկագինն, ավաղ,
Եվ ինչ էլ լինի, չպիտի երբեք
Թույլ տանք, որ նրա բախտի հետ խաղան...

## Էքսպրոմտ

Ո՞վ է ուժեղ, մե՞նք, թե՞ նրանք:
Նրանք՝ շանթեր,
Մենք՝ ծառեր...

Ո՞վ է ուժեղ, մե՞նք, թե՞ նրանք:
Նրանք՝ կարկուտ,
Մենք՝ տառեր...

Ո՞վ է ուժեղ, մե՞նք, թե՞ նրանք:
Նրանք՝ մոլուցք,
Իսկ մենք՝ սեր...

Մենք մեր կյանքում այնքան կարկուտ,
Շանթ ու մոլուցք ենք տեսել...

# ԵԳԻՊՏԱՑԻՆԵՐԻ ԱՍՏՂԱՅԻՆ ԺԱՄԱՑՈՒՅՑԸ



Այսօրվա Մեծ Բրիտանիայի տարածքում հին ժողովուրդները կառուցեցին կիկլոպյան շինություն՝ Սթոունհենջը: Անցան դարեր, և ժառանգները մոռացան, թե ինչու իրենց նախնիները կանգնեցրին այդ «կախովի քարերը»: Երկար վիճեցին գիտնականները և միայն քսան տարի առաջ հանգեցին մի ընդհանուր եզրակացության, որ Սթոունհենջը ծառայել է որպես յուրօրինակ «հաշվիչ մեքենա»

լուսնի խավարումները գուշակելու համար: Միայն այդքա՞ն: Արժե՞ր դրա համար իրար վրա դարսել տոննաներ կշռող քարերը:

Դեռ որքան չբացահայտված գաղտնիքներ են պահում հին դարերի մեծ հուշարձանները: Մենք, որ այդպես հպարտանում ենք մեր քաղաքակրթության ընվաճումներով, չենք կարողանում հասկանալ ինչ-որ «պրիմիտիվ» կառույցների իմաստը: Իսկ գուցե հնում մարդիկ ինչ-որ տեղ մեզնից ավելի շատ գիտեին: Այս խռովիչ միտքն արդեն որոշ գիտնականների գլխում ծագել է:

Մամուլում նույնիսկ հայտարարություններ են եղել, որ Պերուի հին բնակիչները գիտեին Արեգակնային համակարգության կառուցվածքը... Կոպեռնիկոսից ոչ վատ, որ մենք չենք կարողանում հասկանալ Նասկայի հովտի հսկայական նըկարների սիմվոլիկ նշանակությունը իբր պարզապես երևակայության բացակայությունից՝ իբրև թե դեռ չենք հասել հին պերուացու մտավոր մակարդակին:

Սա արդեն հակադիր ծայրահեղություն է՝ մեր քաղաքակրթության նվաստացումը: Իսկ ճշմարտությունը, երևի, գտնվում է մեջտեղում: Փորձենք վերծանել հնագիտական հուշարձանների առեղծվածային իմաստը ո՛չ մեծարելով, ո՛չ էլ նսեմացնելով հնադարյան մարդկանց գիտելիքները, միացնելով երևակայությունը կասկածամտության հետ:

Նման հուշարձաններ կան նաև Հայաստանում: Դրանք ինչ-որ բանով հիշեցնում են Սթոունհենջը: Լեռան լանջին կանգնած են հողի մեջ խրված մենաքարերը: Դրանք կազմում են մի քանի շըրջան: Գիտնականները կարծում են, որ դեռևս մեր թվարկությունից 2800—2600 տարի առաջ Հայկական լեռնաշխարհի այս և մյուս կառույցները օգտագործվում էին ժամանակը հաշվելու համար:

Ըստ երևույթին, հնադարյան աստղադիտարաններ կան ամենատարբեր տեղերում: Ինչո՞ւ դրանք դեռ չեն հայտնաբերվել Եգիպտոսում՝ ամենահին և զարգացած քաղաքակրթություններից մեկի օրրանում: Պետք է ենթադրել, որ այնտեղ, դրանք կան, միայն թե երևի մենք չգիտենք, որ այդ կառույցները որևէ կապ ունեն աստղագիտության հետ: Վերցնենք թեկուզ բուրգերը՝ փարավոնների գերեզմանոցները: Իսկ գուցե եգիպտացիները օգտագործել են այդ կիկլոպյան կառույցները նաև ժամանակը չափելու համար:

Սակայն ժամանակակից գիտնականները հաստատում են, որ հնադարյան գիտությունը չէր կարող լինել փորձարարական, քանի որ գործիքները չէին երաշխավորում ճշգրտությունը: Դժվար է վիճել հեղինակությունների հետ, բայց եկեք ուշադիր քննենք. ի՞նչ պետք է իմանալ, օրինակ, տարվա, ամսվա, օրվա տևողությունը որոշելու համար: Սկզբում անհրաժեշտ է բնության մեջ գտնել պարբերական պրոցես՝ ժամանակի յուրահատուկ չափանմուշ: Օրինակ, Լուսնի, Արեգակի և մյուս աստղերի շարժումը երկընքում:

Հետազոտական առումով, յուրաքանչյուր երկնային օբյեկտ ունի իր թերությունները: Արեգակը չի կարելի դիտել գիշերը, աստղերը և Լուսինը՝ ցերեկը... Ահա այստեղ էր, որ պետք եկան քրմերի գաղտնի գիտելիքները: Նրանք գիտեին, որ բոլոր աստղերը պտտվում են մի անշարժ կետի՝ աշխարհի Հյուսիսային բևեռի շուրջը, և, ի տարբերություն Լուսնի և Արևի, միշտ ծագում և մայր են մտնում նույն տեղերում, փոխվում է միայն այդ երևույթների ժամանակը: Կան աստղեր, որոնք պտտվում են, հորիզոնի ետևը չանցնելով: Եվ որքան ավելի մոտ է աստղը այդ բևեռին, այնքան ավելի փոքր է նրա շրջանաձև ճանապարհի տրամագիծը երկնքում:

Աստղային ժամացույցներ ստեղծելու համար անհրաժեշտ է այնպես կառուցել ջրհորը, որպեսզի նրա առանցքը համընկնի աշխարհի բևեռի ուղղության հետ և ընկած լինի միջօրեական հարթության վրա: Ջրհորի հատակից պետք է ամբողջովին երևա բևեռին ամենամոտիկ գտնըվող պայծառ աստղի պտույտի հետագիծը: Քեոփս Փարավոնի ժամանակներում այդ աստղը Տուբանն էր (Վիշապի ալֆա աստղը), որը գտնվում էր աշխարհի բևեռից բոլորովին ոչ հեռու:

Այդպիսի ժամացույցներով աշխատելը համեմատաբար հեշտ էր: Քուրմ աստղագետը տեղավորվում էր թունելի խորքում և հետևում էր աստղին թվահարթակի ֆոնի վրա, որը բաժանված էր որոշակի քանակության հավասար մասերի, օրինակ 24: Նշելով շրջանաձև պտտվող Վիշապի համաստեղության ալֆա աստղի դիրքը, նա կարող էր չափել, թե քանի «ժամ» էր տևում գիշերը, երբ չէր երևում Արևի շողերի մեջ: Քուրմը գրանցում էր

իր հետազոտությունների արդյունքները և նկատում, որ տարվա մեջ երկու անգամ օրվա տևողությունը հավասար էր գիշերվա տևողությանը: Դրանք գարնան և աշնան գիշերահավասարի օրերն էին, որոնց միջև ընկած լրիվ օրերի քանակը ենթադրվում էր որպես կիսամյակ...

Սակայն կա՞ արդյոք նմանատիպ ջրհոր Եգիպտոսում: Պարզվում է, որ կա՝ ճիշտ այդպիսին և, չգիտես ինչու՝ միայն մեկ հատ: Նրա բոլոր տվյալները այնպես ճշգրիտ կերպով են համընկնում «իդեալականին», որ նույնիսկ սաստիկ թերահավատները ստիպված պետք է լինեն ընդունել պատահական զուգադիպությունների չափազանց փոքր հավանականությունը: Վերը թվարկված պայմանների պատասխանը տալիս է ջրհոր-ստորաստրահը, որը տանում է դեպի Քեոփսի բուրգի «արքայական խուցը»:

Այսպիսով, Մեծ բուրգը կարող էր օգտագործվել քրմերի կողմից որպես ժամացույց: Առաջինը այդ միտքն արտահայտեցին Ծազելը և Քեթսվորթը: Սակայն, նրանք ենթադրում էին, որ բուրգը ծառայում էր որպես արևի ժամացույց, որի վրա ժամը նշվում էր նրա գագաթից ընկած ստվերի միջոցով: Դա այնքան էլ համոզիչ չէ: Եթե քրմերին պետք էին արևի ժամացույցներ, ապա դրանք կարելի էր կառուցել ավելի պարզ կերպով՝ օգտագործելով ոչ մեծ քարակոթողներ, որոնք ավելի ճշգրիտ և հազար անգամ ավելի էժան կլինեին: Ի դեպ, ժամանակակից հետազոտողները պարզել են, որ քրմերը օգտագործել են եգիպտական բուրգերի քարակոթողները հատկապես որպես արևի ժամացույցներ:

Մեծ համոզվածությամբ կարելի է ենթադրել, որ Քեոփսի ջրհորը ծառայում էր որպես աստղային ժամացույց: Քրմերը, որոնք ղեկավարում էին շինարարությունը, այնպես էին կառուցել սրահը, որ այն կարող էր իսկ և իսկ օրինակելի աստղային ժամացույցի դեր կատարել տարվա բոլոր եղանակներին: Այդպիսի ժամացույց ունենալով՝ կարելի էր նաև օրացույց կազմել: Եգիպտացիների տարին կազմված էր 12 ամսից, յուրաքանչյուրում՝ 30 օր: Տարվա վերջում ավելացվում էին ևս 5 տոնական օրեր:

Ժամանակակից գիտնականները նույնպես ունենալով կատարյալ տեխնիկա, ժամանակը չափում են աստղային ժամացույցներով, և բոլոր գիտատեխնիկական նվաճումների բարձունքից մենք կարող էինք ներողամիտ կերպով գնահատել եգիպտական քրմերի «պրիմիտիվ» չափումների մակարդակը...

Ավաղ, առայժմ մեզ հայտնի չէ, թե ինչ ճշտությամբ էին նրանք որոշում ժամանակը: Չէ՞ որ քրմերը խիստ գաղտնի էին պահում այդ ամենը: Սակայն մենք կարող ենք դատել դրա մասին համանմանությամբ, օգտագործելով ստույգ տեղեկություններ հին, անցյալ ժամանակների ուրիշ ժողովուրդների մասին:

Ամերիկյան օլմեկների, մայաների և ացտեկների համար խիստ հարգի էր աստղագիտությունը: Օրինակ, այս ցեղերը ունեին չափազանց զարգացած սիստեմով կառուցված հատուկ աստղադիտարաններ, որոնցից էին Կարակոլը, Վաշակտունը և Պալենկեն: Մինչև օրս գաղտնիք է, թե ինչպես էին մայա ցեղի աստղագետները այդպես ճշգրիտ որոշել տարվա տևողությունը... 365, 242 օր: Եկեք լուրջ խորհենք: Ժամանակակից գիտնականները, օգտագործելով բարդ չափող տեխնիկա, կարողացան ճշտել այդ թիվը ընդամենը մի քանի վայրկյանով...

Իսկ գուցե հները պատահաբա՞ր էին ստացել այդպիսի ճշգրիտ թվեր: Դժվար թե, չէ՞ որ հայտնի է, որ շումերները հաշվել էին Լուսնի պտույտի պարբերությունը մինչև 0,5 վայրկյան ճշտությամբ:

... Կարդալով այս հրապարակումը, խորաթափանց ընթերցողը հնարավոր է որ մի խճճող հարց տա: Մի՞թե աստղային ժամացույց ստեղծելու և դրանից օգտվելու համար եգիպտական քրմերը պետք է իմանային այն, ինչ եվրոպական գիտնականները հասկացան հազարամյակներ հետո՝ Երկիրը պտտվում է իր առանցքի և Արևի շուրջը: Միանգամայն ճիշտ է, և ժամանակակից գիտնականները հաստատում են, որ հին աստղագետներն ունեին այդ տվյալները: Ինչպե՞ս դժվար է տալ որևէ բանական պատասխան: Բայց դրա փոխարեն արտասովոր վարկածների պակասություն չի զգացվում, օրինակ, այլ մոլորակներից ժամանած եկվորները կարող էին «հուշել»:

Վերջերս ֆրանսիական և ճապոնական հետազոտողները զգայուն գործիքների օգնությամբ հայտնաբերեցին անհայտ դատարկ տարածություններ Մեծ բուրգում և նրա տակ: Գուցե հնագետների պեղումները գրավոր տեղեկություններով հաստատեն այդ վարկածը:

# ԳՏԱԾՈՆԵՐ ԳՆԴԵՎԱՆՔԻՑ

Գնդեվանքի համալիրը գտնվում է Գնդեվազ գյուղից հյուսիս, ձորի մեջ, Արփա գետի ձախ ափին: Այն Հայաստանի միջնադարյան ճարտարապետական կարևոր հուշարձաններից է և շուրջ 700 տարի (10—17-րդ դդ.) նշանակալից դեր է խաղացել հայ ժողովրդի մշակութային կյանքում: Գնդեվանքի եկեղեցին, որը ըստ Ստեփանոս Օրբելյանի կոչվում է սբ. Վկայից վանք, հետագայում անվանվել է Նախավկա, որի մասին տեղեկանում ենք 1875—1981 թթ. գտնված իրերի արձանագրություններից:

Ս. Նախավկա եկեղեցին սկսել է կառուցվել 928 թ., Դերենիկ Արծրունու դուստր, Սյունաց Սմբատ իշխանի կին, տիկին Սոփիի պատվերով, որի մասին վանքի արևմտյան պատին կա արձանագրություն. «Մատանի էր անակն Վայոց ձոր, շինեցի զսա և եդի ակն ի վերա»:

Վանքի շինարարությունն ավարտվել է 936 թվականին: Վանքի կառուցման ժամանակ առաջնորդ է նշանակվել Սարգիս քահանան, իսկ շինարարությունն ընդհանուր տնօրինել է Եղիշե երեցը: Վերջինս Սյունիքի գեղանկարչական դպրոցի ականավոր ներկայացուցիչներից է: Նրա ձեռքով են արվել գլխավոր եկեղեցու ների բարձրարվեստ որմնանկարները:

Գնդեվանքի եկեղեցին և գավիթը վերանորոգվել են 1309 թ.՝ Գրիգորի և 1691 թ.՝ Պետրոս վարդապետի կողմից, պարսպի և բնակելի սենյակների հետ միասին:

1981 թ. եկեղեցու տարածքի սենյակներից մեկում՝ մաքրման աշխատանքների ժամանակ հայտնաբերվել է կառաս, աշխարհիկ և կրոնական նշանակության 43 մետաղե և ճենապակե արձանագիր իրերով:

Լուսանկարները՝ ԱՐԱՄ ՕՀԱՆՅԱՆԻ







Նմանատիպ իրերի մի խումբ հայտնաբերվել է դեռևս 1875 թ. հոկտեմբերի 12-ին: Գեղեվանքի վանահայրը հացատան առջևի հողը մշակելիս, պատահմամբ բացել է սալով ծածկված մի հոր, որի մեջ գտնվել են զանազան մեծության յոթ մոմակալ, միջին մեծության սինի, կափարիչ, կաթսա և չորս փոքրիկ զանգակ: Այս բոլորն ունեն միևնույն արձանագրությունը. «Յիշատակ է Գնդեւանայ սուրբ Նախավկային»: Երեք պղնձէ բուրվառ, որոնցից մեկի վրա գրված է. «Յիշատակ է Ծատուրի որդի Ակոբին, որ ետի դուռն Նախավկային»: Մի զույգ ծնծղա և երկու զանգակ՝ հետևյալ արձանագրությամբ. «Յիշատակ է Գնդեւանայ սուրբ Նախավկային Թ ՌՃԽ (1140 թ.)։ Մի մեծ զանգ՝ 32 կգ, «ՉԾԶ (756 թ.) թվ. զսարկավագ քահանայ յիշեք ի Քրիստոս, որ ստացայ զսա»: Զանգակը ձուլված է մ. թ. 1307 թվականին:

Այս իրերի հետ գտնվել են նաև շամփուր, ունելի և կավե կարաս, որի մեջ՝ կազմած տպագիր գրքեր, որոնց թերթերը խոնավությունից ոչնչացել են: Պահպանվել է միայն մի ավետարանի կազմի արծաթե խաչը, որի կենտրոնին ագուցված է եղել կարմիր քարե ակ:

Գնդեվանքը մինչև 1875 թվականը մնացել էր առանց միաբանության: Վանքի տխուր պատկերը փոխվում է նույն թվականի ամառվանից, երբ վարդապետ Պետրոս Տեր-Հարությունյանցը, կամենալով իր ծերությունը սփոփել առանձնության մեջ, ընտրում է քայքայված ու ամայի Գնդեվանքը:





Եվ ահա 1981 թվականին հայտնաբերվեց ևս մեկ կարաս:

Գտնված իրերից ամենավաղ թվագրությունն ունեն երկու ծննդա (1679 թ.), իսկ ամենաուշը՝ երկու քշոց (1697 թ.), և այդ իրերը նվիրել են Գնդեվանքի հոգևոր կենտրոնին՝ սբ. Նախավկա եկեղեցուն, երկու բուրվառ՝ սբ. Ստեփանոս եկեղեցուն, և մեկ թաս՝ սբ. Աստվածածնին եկեղեցուն:

Նվիրատվությունների թվում են նաև սափորներ, աշտանակներ, մոմակալներ, բուրվառներ, թասեր, ասպանդակներ, հավանգ: Առանձին ուշադրության է արժանի գտածո երկհարկ ջահը: Գտնվել են նաև ճենապակե թասեր, ափսե, ըմպանակներ:

Միջնադարյան Հայաստանում ջահերը առանձին շուք էին տալիս ճարտարապետական շքեղ համալիրներին: Ջահերն ու աշտանակները լուսավորում էին արքունական դահլիճները, տաճարները, իշխանական պալատներն ու եկեղեցիները: Միջնադարյան Հայաստանում աշտանակների պատրաստումը հասել էր այնպիսի կատարելության, որ վերածվել էր առանձին արհեստի:

Աշտանակները կազմված են կենդանու թաթ հիշեցնող երեք ոտքերով հենակներից, ուռուցիկ գոտիներ ունեցող չորս խողովակից, երեք թասիկից: Սրանք հավաքվել են պտուտակով՝ մեկ ձողի վրա:

Աշտանակների ձևը (բուն, բնից վեր ձգվող շիվ, կատարին՝ լույս) հիշեցնում է ծառի և ըստ ժողովրդական պատկերացումների՝ ունի կենաց ծառի խորհրդանիշ, պտղաբերության, կյանքի հարատևության ու անմահության գաղափար:

Քրիստոնեությունը մի շարք ավանդությունների ու սովորությունների հետ միաժամանակ հեթանոսական անցյալից ժառանգեց և բուրումնավետ յուղերի, խեժերի ու անուշահոտ բույսերի ծխարկումը (խնկարկումը): Այդ նպատակով օգտագործվել են մարեման, կնդրուկը, հալվեն և մուշկը: Վերջիններս կոչվում էին անուշ խունկ և ծխվում էին հատուկ անոթներում: Հայերը, որպես խնկարկման անոթներ, գործածում էին բուրվառներն ու խնկանոցները, որոնք առանձին շուք էին հաղորդում տոնական հանդեսներին: Գնդեվանքից հայտնաբերված է նմանատիպ երկու բուրվառ, որոնք զարդարված են վարդյակներով, աստղերով, տերևանախշով և միջանցիկ կլոր անցքերով: Խաչ, վարդյակ, աստղ, աղավնի՝ սրանք այն զարդաձևերն են, որոնք քրիստոնեական սիմվոլիկայում իմաստավորում են մեռնող և հառնող բնություն, հավիտենական շարժում հասկացությունները:

Խնկարկման նպատակը ոչ միայն եկեղեցիների ու տաճարների, բեմերի, խորանների և եկեղեցական սպասքի օծումն էր, այլ օդի մաքրումն ու հեղումը խնկի անուշահոտ բուրմունքով, որը կրոնական ծիսակարգության բավականին ազդեցիկ միջոցներից էր:

Գնդեվանքում գտնված բուրվառներն ունեն հետևյալ արձանագրությունը. «Յիշատակ է Թարգի Գրիգորի որդի Վարդազին ի դուռն սբ. Ստեփանոսու թվ ՌՃԼԸ» (1689թ.): Բուրվառները ծածկվում են կափույրով և կախվում երեք շղթայով, որոնք իրանին են միանում հրեշտակակերպ թևավոր զարդանախշերով:

Ուշագրավ են նաև գտածո քշոցները, որոնց մի կողմում դրվագված է թևավոր դեմք: Այն հիշեցնում է բուրվառների վրա եղած հրեշտակակերպ զարդերը, թևերը լցված են ցանցկեն գծերով և շրջապատված են խաչերով: Քշոցներն էլ ունեն արձանագրություն. «Յիշտ է Ավաքի որդի Փիլիպոսին եվ ի կողաց ի Մելին գեղըն Գնդեվազ: Ի դուռն սբ. եկեղեցուն թվ ՌՃԽԶ» (1697 թ.): Քշոցների մյուս երեսը զարդարված է նույն զարդանախշով և ունի «Գնդեվանաց սբ Նախավկային» արձանագրությունը: Սկավառակի եզրերին կլոր միջանցիկ անցքերից օղակով կախված են եղել մեծ և փոքր զանգակները, որոնք շարժելիս ախորժալուր հնչյուններ են արձակել:

Գտածոների ուսումնասիրությունը տեղեկացնում է հայ ժողովրդի հնագույն պատկերացումների՝ կենաց ծառի, պտղաբերության, կյանքի հարատևության ու անմահության վերաբերյալ:

Գնդեվանքի գտածոները հնարավորություն են տալիս նաև գաղափար կազմելու այլ ժողովուրդների հետ հայերի հնագույն ժամանակների կենցաղի, սոցիալական կյանքի, արհեստների, մշակույթի ու տնտեսական փոխհարաբերությունների մասին, որոնք ունեն պատմական մեծ նշանակություն:

**ԱՐԱՔՍ ՄԵԾԻՆՅԱՆ**

# Խնդիրներ երկնքի և երկրի մասին

● Երկրի վրա որտե՞ղ են մարմինները ավելի թեթև:

● Լուսնի վրա իրերի կշիռը վեց անգամ թեթև է, քան երկրի վրա, քանի որ լուսնի ձգողականությունը վեց անգամ պակաս է երկրի ձգողականությունից: Պատկերացնենք, որ լուսնի վրա լիճ կա: Լողալ չիմացող մարդը երկրային լճում շուտ կխեղդվի, թե՞ լուսնային լճում:

● Նայեք պատկերված արևամուտին՝ ճի՞շտ է արդյոք նկարված: Բնապատկերում աչք ծակող անճշտություն կա: Ո՞րն է այն:

● Կարո՞ղ է մարդն երկրից առաջ ընկնել, եթե ոչ քայլքով, ապա մեքենայով կամ ինքնաթիռով: Կարո՞ղ է մարդը մրցել երկրագնդի իր առանցքի շուրջ պտտվելու արագության հետ:

Կարելի՞ է արևածագը տեսնել արևմուտքում:

● Երկրի ո՞ր մասում չի կարելի հավատալ կողմնացույցին այն պատճառով, որ սլաքի հյուսիսային ծայրը ցույց է տալիս հարավ, իսկ հարավային ծայրը ցույց է տալիս հյուսիս:

● Կարո՞ղ են գետերը երբեմն հոսել իրենց սովորական ընթացքին հակառակ, այսինքն ցածրից՝ բարձր, ներքևից՝ վերև:

Անմիջապես մի ժխտեք, մտածեք՝ նոր:

● Մենք հաճախ ասում ենք «անափ ծով», իսկ իրականում կա՞ այդպիսի ծով:






**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ԵՐԵՍՈՒՆՎԵՑԵՐՈՐԴ

# Տրդատ Մեծից հետո

301 թ. ամբողջ Մեծ Հայքում քրիստոնեությունը ընդհանուր կրոն հայտարարվելուց քիչ անց, Գրիգոր Լուսավորիչի և նրա մարդկանց օգնությամբ Վրաստանը և Աղվանքը նույնպես ընդունեցին քրիստոնեություն: Ամբողջ Հարավային Կովկասում (Անդրկովկասում) քրիստոնեությունը գերիշխող կրոն էր դարձել: Կենտրոնը Էջմիածինն էր՝ Վաղարշապատը, ղեկավարը (կաթողիկոսը)՝ Գրիգոր Լուսավորիչը:

Քրիստոնեության ընդունումով ամրապնդվեց Մեծ Հայքի միասնությունը, և հարևան երկրներն էլ՝ Վրաստանն ու Աղվանքը, կախյալ վիճակում էին Հայաստանից: Տրդատ Մեծի երկարատև թագավորության ժամանակաշրջանում Հայաստանում խաղաղություն էր ու բարգավաճում: Գրիգոր Լուսավորիչը հրաժարվեց կաթողիկոսական աթոռից և որպես ճգնավոր քաշվեց անբնակ վայր: Նրա փոխարեն կաթողիկոս ձեռնադրվեց որդին՝ Արիստակեսը: Այսպես, հայոց կաթողիկոսությունը դարձավ ժառանգական:

325 թ. Նիկիա քաղաքում (Փոքր Ասիա) տեղի ունեցավ աշխարհի բոլոր քրիստոնյաների ժողովը, որը դատապարտեց հույն եպիսկոպոս Արեոսին այն բանի համար, որ նա Քրիստոսին մարդ էր համարում: Հայաստանի կողմից այդ ժողովին մասնակցում էր Արիստակեսը՝ իբրև Մեծ Հայքի եպիսկոպոս:

Թեև քրիստոնեությունը պաշտոնապես ընդունված էր Հայաստանում, բայց հայ ժողովրդի մեծ մասը ապրում էր իր հեթանոսական կրոնի օրենքներով: Արիստակեսը ջանք չէր խնայում քրիստոնեությունը Հայաստանի բոլոր մասերում հաստատելու համար, նա եռանդով պայքարում էր հեթանոսության դեմ: Բայց չկար հայերեն Աստվածաշունչ՝ քրիստոնեության գիրքը, ուստի հայ ժողովուրդը լավ չէր ըմբռնում նոր կրոնի էությունը: Իսկ հեթանոսության կողմնակիցներն էլ իրենց հերթին պայքարում էին նոր կրոնի դեմ: Տրդատի մահից հետո հեթանոսության կողմնակիցները ուժեղացան: 333 թ. Ծոփքի հայ իշխան Արքեղայոսը Արիստակեսին սպանեց: Կաթողիկոս դարձավ Արիստակեսի եղբայր Վրթանեսը, որի դեմ նույնպես մահափորձ արեցին: Բայց ապարդյուն:

Հայոց եկեղեցին ստիպված էր հեթանոսությունը հաշտեցնել քրիստոնեության հետ: Օրինակ, անասուններին զոհաբերելը (մատաղը), որ հեթանոսական ծես էր և հակառակ էր քրիստոնեությանը, հայոց եկեղեցին սկսեց թույլատրել: Հեթան-

սական տոներին քրիստոնեական երանգ տրվեց. այդպիսի տոներից են տրնդեզը, վարդավառը, համբարձման տոնի ժողովրդական արարողությունները (գուշակություն, վիճակահանություն և այլն), Զատկի տոնի որոշ սովորություններ (ձու ներկելը և այլն):

Ըստ որոշ տեղեկությունների, Տրդատ III-ն էլ կյանքի վերջում անցել է լեռները ճգնավորության: Նա մահացել է 330 թ.: Այս նույն թվականին Հռոմի Կոստանդինոս Մեծ կայսրն իր մայրաքաղաքը դարձրեց Բյուզանդիոնը, որը նրա անունով կոչվեց Կոստանդնուպոլիս (Կոստանդինի քաղաք): Այս քաղաքը, որ գտնվում է Սև և Միջերկրական ծովերը միացնող Բոսֆորի նեղուցի երկու կողմում, շուտով ծաղկեց: Այն դարձավ երկու մասի բաժանված Հռոմեական կայսրության արևելյան հատվածի մայրաքաղաքը:

Տրդատ Մեծի ժամանակ հայերի արևելյան և արևմտյան կողմնորոշումներ ունեցող կուսակցությունները գոնե արտաքուստ հաշտ էին: Իսկ Տրդատից հետո նրանց մղած պայքարը սաստկացավ: Եվ առհասարակ Տրդատ Մեծը իր գոյությամբ իսկ զսպում էր Հայաստանի նախարարների պայքարը ինչպես թագավորի, այնպես էլ իրար դեմ: Եկեղեցին



Տրդատ Մեծ

Տրդատ և Խոսրովադուխտ

էլ համերաշխ էր պետական իշխանության հետ: Տրդատի մահով այս բոլոր ուժերը սանձազերծվեցին:

Տրդատ Մեծից հետո եկած ժամանակաշրջանում Հայաստանի մեջ կատարված դեպքերի մասին ամենից մանրամասն գրված է Փավստոս Բուզանդի «Հայոց պատմության» մեջ: Փավստոսն իրեն ներկայացնում է որպես 4-րդ դարի հեղինակ, և նրան էլ չհավատալու պատճառ չունենք: Հնարավոր է, որ նա նույնպես իր գիրքը գրած լինի հայերեն՝ հունական կամ հնագույն հայկական տառերով և կամ ուղղակի՝ հունարեն: Եթե իրոք հունարեն է գրել, ապա 5-րդ դարում այդ գիրքն էլ կարող էր թարգմանվել հայերեն:

330—338 թվականներին Մեծ Հայքի թագավորն էր Տրդատ Մեծի որդի Խոսրով III-ը, որ կոչվեց Կոտակ (կարճահասակ): Նրա օրոք իրար դեմ պատերազմում էին հայոց երկու նախարարություններ՝ Որդունիները և Մանավազյանները: Նրանց անվերջ արյունալի կռիվները թուլացնում էին Հայաստանը: Եվ Խոսրով Կոտակի կարգադրությամբ սպարապետ Վաչե Մամիկոնյանը այդ նախարարությունների բոլոր տղամարդկանց ըսպանեց:

Հայերի արևելյան կողմնորոշումը արտահայտվում էր հակահռոմեական տրամադրությամբ և պարսիկների հետ միաբանվելու ծրագրերով: Այդ կուսակցության ներկայացուցիչ էր զորավար Դատաբեն Բզնունին, որը հակառակ թագավորի հրամանի՝ հաշտություն կնքեց Հայաստանի վրա հարավ-արևելքից արշավող պարսից Շապուհ II Երկարակյացի զորքերի հետ: Հայոց թագավորը պարսիկների դեմ նոր, ավելի մեծ զորք ուղարկեց սպարապետ Վաչե Մամիկոնյանի ղեկավարությամբ: Հայերը հաղթեցին, պարսիկներին հետ շպրտեցին: Իսկ Դատաբեն Բզնունուն թագավորի մարդիկ ձերբակալեցին, բերեցին Վաղարշապատ և թագավորի առաջ քարկոծելով սպանեցին: Նրա ամբողջ տոհմը ոչնչացրին:

Ապա՝ արևելյան կողմնորոշում ունեցող նախարարներից թագավորի դեմ ապըստամբեց նաև Աղձնիքի բդեշխ Բակուրը: Թագավորի զորքերը այդ ապստամբությունն էլ ճնշեցին, Բակուրին սպանեցին:

Ինչպես տեսնում ենք, Մեծ Հայքի միասնությունը պահպանելու համար հայոց թագավորը պատերազմում էր ան-



Տրդատ և Հռիփսիմե

հնազանդ նախարարների դեմ, ճիշտ այնպես, ինչպես եղել էր հնում՝ Արարատի թագավորության ժամանակներից սկսած: Հայոց թագավորը, ինչպես առաջ, այժմ էլ բացի զինվորական ուժ գործադրելուց, նաև այլ միջոցների էր դիմում անհնազանդ իշխաններին սանձելու համար: Այսպես, օրինակ, Խոսրով Կոտակը օրենք հրատարակեց, ըստ որի խոշոր զորաբանակ ունեցող նախարարները միշտ իր հետ պետք է լինեին (որպեսզի չդավեն): Ապա՝ Խոսրով Կոտակը կարգադրեց անտառապատել Ազատ և Մեծամոր գետերի շրջակայքը մինչև Գառնի ամրոցը: Անտառում բազմացրին վայրի կենդանիներ: Այդտեղ զվարճանում և որս էին անում թագավորն ու նախարարները: Խոսրով Կոտակի նպատակն էր նախարարներին այդ կերպ զբաղեցնել, որպեսզի նրանք հայոց արքունիքի դեմ դավեր չլարեն: Այդ անտառը մինչև այժմ էլ կա և կոչվում է Խոսրովի անտառ:

Իր իշխանությունը ամրապնդելու համար թագավորը մեծ արտոնություններ տվեց հայր Մարդպետին (դա պալատական բարձր պաշտոն էր, որի դերն էր նաև պաշտպանել Արշակունի թագավորների գահը):

Խոսրով Կոտակը հիմնեց նաև նոր մայրաքաղաք՝ Դվինը: Պատճառն այն էր, որ Արաքս գետը հունը փոխել էր, և Արտաշատն այլևս չէր ողողվում այդ գետով, իսկ նախկին հունի տեղում գոյացել էին ճահճուտներ, որոնք հիվանդություններ էին տարածում: Նոր մայրաքաղաքում շքեղ ապարանքներ կառուցեցին: Դվինը և Վաղարշապատը միասին հայ Արշակունիների երկու մայրաքաղաքներն էին:

Խոսրով Կոտակի ժամանակ Կասպից ծովի մոտերքից Հայաստանի վրա հարձակվեցին մազքութները, որ իրանական ցեղ էին: Նրանք մոտ մեկ տարի ասպատակում էին Հայքը, մինչև որ 336 թ. Օշական գյուղի մոտ սպարապետ Վաչե Մամիկոնյանը ջախջախեց նրանց զորքերը, իսկ մազքութների Սանեսան թագավորը սպանվեց:

Շապուհ II-ը մոտ 338 թ. նորից արշավեց Հայաստանի վրա: Պատերազմում սպանվեց անվեհեր սպարապետը՝ Վաչե Մամիկոնյանը:

(շարունակելի)

ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ

# Քառասուն գայլ և մի գառնուկ

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

—Բա հիմա՞ ինչ անենք,— սարից իջան ու ասացին երեսունինը գայլ:

— Գելն է՛լ կասի՝ ինչ անենք,— ասաց ձորի Տեր գայլն ու նրանց մոտեցավ:— Եկեք դառնանք քառասուն և մի գառնուկ գողանանք:

— Դառնանք,— ասացին երեսունինը գայլը և դարձան քառասուն:

Դարձան քառասուն, և ցից-ցից մազը կողերին կպած, աչքերը դեղնած ու միականջ Տերը հանդիսավոր ասաց.

— Բան է, եթե մեկն ու մեկը հանկարծ պատահի գառնուկին, թող մենակ չգողանա: Մենակ գայլին շները անպայման բռնում են, և հովիվը մենակ գայլից չի վախենում: Բացի այդ, միշտ իմացեք, որ մենք քառասուն ենք և մեկիս որսը նաև մյուսների համար է:

— Մենք իրար սիրո՞ւմ ենք,— գոռացին փորձված գայլերը:

— Մենք գող չե՞նք,— զայրացած վրա քշեցին մռայլ գայլերը:

— Ո՞վ է մեր մասին այդպես չարախո-

ել,— հուզված կանչեցին ջահելները, իսկ ոմանք տխուր ցույց տվեցին անկեղծորեն հայտնված արցունքները:

— Իսկ այդ հիմար հովվին ու դավաճան շներին մենք ուղղակի կով կըտանք,— վճռական ասացին երեսունինը գայլերը:

— Ապրեք,— ասաց Ծերը,— շատ ապրեք: Ես գիտեմ, որ դուք ծերերին էլ եք սիրում, և ով գառնուկ տեսնի՝ անպայման առաջինը ինձ իմաց կանի: Կարծեմ արդեն հասկացաք, որ ես գառնուկին աղբյուրի մոտ բռնեցրած գայլն եմ:

— Այո՛, Հայրի՛կ, այո՛, Իմաստո՛ւն,— լացելու չափ ոգևորվելով կանչեցին ջահելները:

— Առանց քեզ մենք չենք կարողանա հովվին ու շներին խաբել, և դրա համար էլ ամեն ինչ դու պիտի որոշես,— համառ ասացին սարի ցուրտ մառախուղներից մրսածները, որ դեռ դողդողում ու արթարթում էին:

— Այդպես,— ասաց Ծերը,— ուրեմն՝ հիմա գնում եք գառնուկ փնտրելու. ով գտավ, գալիս ու ինձ ասում է, եղա՞վ:

—Այո՛, անպայմա՛ն,— գոռգոռացին երեսունինը գայլերը և գնացին դաշտերում ու սարերում թափառելու, որ միայնակ գառնուկ գտնեն:

Առաջին օրը գարնան վերջն էր՝ անձրևների ու մառախուղների տակ թաքնվելով՝ տեղն իմացան: Երկրորդ օրը ամռան սկիզբն էր՝ ցոլցլուն հովը վառ ծաղիկների բույրերով էր ծածկում նրանց թանձր հոտը, իսկ բարձր խոտերի միջով նրանց գորշ մեջքերը չէին երևում, և ըզգույշ ստուգեցին, թե գառնուկի ետևից տեսնենք շներ ու հովիվ չե՞ն գալիս: Երրորդ օրը ամռան կեսն էր՝ հովտի կողքում լանջերն արդեն հնձված էին, ու դեղնող խոզանի միջով փախչելը հեշտ էր, և որոշեցին, որ գառնուկն արդեն լավ չաղացել է, և հենց իրիկնադեմին կգողանան, քանի որ նա այդ հովտում հիմա մինչև իրիկնադեմ էր մնում:

Եվ իրիկնադեմից քիչ առաջ նրանք դուրս եկան Մռայլ ձորակից ու լուռ ճամփա ընկան: Փոքրիկ հովտի երկու կողմերում ցածրիկ բլուրներն էին, վերևի՝ երրորդ կողմում մառախուղոտ սարն էր, իսկ չորրորդ՝ գյուղի կողմից գնգուն առվակն էր իջնում պաղ կարկաչելով: Բլուրների լանջերին լուռ, կեսը հնձած խոտհարքներն էին ու լաների տակ հնձվորները գերանդիներն էին թաքցնում, նրանց ձայնը փափուկ իջնում էր իրիկնադեմի ստվերների մեջ, և հանդապահի ձին շան պես հոտոտում էր հնձած խոտի բույրերում ոլորվող վտանգավոր հոտերը: Անտառը սարի վրա էր՝ անվերջ մինչև կատար, ու ամպից լուռ մառախուղ էր քաշում. եթե մեկը կարողանար սարի փեշին հասնել, անտառում այնպես կթաքնվեր, որ շները երեք օր էլ որոնեին, չէին գըտնի: Բայց ահա ոտնաձայները կարկաչի տակ թաքուն պահող առվակի կողմից կարող է ջրվորներ երևային, որովհետև հիմա ցերեկը հունձ են անում, իսկ բոստանները ջրում լուսնյակի խոնավ լույսի տակ, որ առույգ ձգվելուց կարտոֆիլի փափուկ ցողունը ուղիղ կանգնի ու ծանր ջրի մեջ ծաղիկը չխեղդվի: Եվ գայլերից ամեն մեկը հատուկ իր կողմը լավ գիտեր, որպեսզի անաղմուկ գնա, իսկ մյուս կողմերը մտքներում էին պահել, որ եթե բռնվելու լինեն, միշտ հակառակ կողմ փախչելով՝ այնտեղ թաքնվեն:

Տներից վերև, կարկաչուն առվակի կողքին գառնուկն արածում էր այդ փափուկ հովտում, մինչև որ կթի ժամին ծաղիկների բույրերի հետ հովը մյուս հեռու լանջերից բերում էր մոր արթուն ձայնը: Հնձվորների կողմերից խարույկի ծուխն էր մեկ-մեկ իջնում, ջրի եկողները «բ՛ո» անելով խաղում էին հետը՝ մինչև հնձվորի մեծ կուժի լցվելը, և գրպաններից հանում, աղբյուրի քարերի վրա աղ էին շաղ տալիս: Նա անունները չգիտեր, բայց երբ արեգակն ուղիղ կարմիր ծաղիկների վրա էր նայում, նրանց ուժեղ բույրից թմրելով՝ պառկած ննջում էր ու տարբերում միայն առվակի քչքչոցից, հովի սլսլոցից ու խոտի փափուկ շրշյունից տարբեր ձայները: Նա չգիտեր, որ քառասուն գայլ որոշել են իրեն գողանալ ու չգիտեր էլ, որ դա երրորդ օրն է և դեռ վազվզում էր հեռվից եկած հովի ետևից, որ բերած ձայնը կանգնեցնի ու մորը տեսնի: Բայց ձայնը հիմա հովն իջեցրել էր խոտերի ու ծաղիկների մեջ, և նա արածելով մոռացավ, մինչև որ քիչ հետո, իրիկնադեմին, նորից հիշելով «—Վա՜յ, գելերն ինձ տարան» կանչեր ու Գարեգին պապը մտածեր, որ գառնուկին տուն տանելու ժամանակն է, և գար ու նրան տուն տաներ:

Քառասուն գայլը դուրս եկան փոքրիկ հովտի բոլոր չորս կողմերից: Իրար ցույց



տալով, թե միասին են եկել, նրանք իսկականից միասին չէին, քանի որ ամեն մեկը իր իմացած գաղտի արահետը թաքուն էր պահել, որպեսզի մյուսներին չերևալով՝ առաջինը ինքը հասնի գառնուկին, և նրանք չիմանան, որ ինքը շուտ է հասնելու գառնուկին:

Այդ ժամանակ, քանի որ իրիկնադեմ էր, գառնուկն արդեն տուն պիտի գնար:

— Վա՜յ, գելերն ինձ տարան,— նորից կանչեց նա ու արագ թաքնվեց թփի ետևում, որպեսզի Գարեգին պապն իրեն փնտրի ու իսկականից վախենա. է, համ էլ ծեր պապ է, ստվերների մեջ աչքը լավ չի ջոկի ու ոտքը կարող է հենց ջրի մեջ դնի, և ինքը վրան թաքուն կծիծաղի մութ թփի ետևում:

Քառասուն գայլերը դուրս թռան իրենց թաքուն արահետներից ու հնձած լանջերի վրա իրար պարզ հաշվելով վազեցին առաջ, որպեսզի տեսնեն, թե ով տարավ գառնուկին: Բայց արագ-արագ մյուսներին հաշվելով ու կրկին խառնելով՝ ոչ մեկն իրեն չէր հաշվում, և այդպես էլ չէին գտնում, թե իրենցից հատկապես որն է մնացած երեսունիննին խաբել ու գառնուկին տարել: Այդ մեկն,

իհարկե, մնացածներից և՛ խորամանկ է, և՛ ճարպիկ: Ուրեմն՝ Տերն էր, որովհետև միայն նա է ջրի վրա միայնակ գառնուկ բռնեցրել, և հիմա էլ արդեն սար հասած կլինի: Իրենց հաշվով երեսունինը, բայց իսկականից քառասուն գայլերը իրար ետևից թռան դեպի սար:

Բայց Տերը թույլ էր ու հազիվ էր վազում, բլուրներն անցնելով քիչ մնաց հոտերի շները բռնեին, ու նա որոշեց այլևս գայլերին խելք չսովորեցնել, քանի որ ահա վտանգի պահին ոչ մեկն իր հետ չի: Երբ կեսգիշերին հասավ սարի փեշերին, երեսունինը գայլը արագ շրջապատեցին նրան և ստուգեցին ճանկերն ու ատամները: Մռայլ անտառից ու դատարկ լանջերից պոկվելով՝ նրանց վրա սառը, սև քամի էր փչում, և ուժասպառ Տերը վնգվնգալով դողդողում էր սարի աշնան խիստ պաղից: Քամու մեջ ճռճռում էր անտառը, և փափուկ թռչելով ծառից ծառ չարախինդ ու երկար նրանց վրա էր ծիծաղում գիշերվա իմաստուն բուն:

— Հիմար եք,— ասաց հոգնած Տերը,— որ ես տարած լինեի, ինչո՞ւ պիտի ձեզ մոտ գայի:

Բայց երեսունինը գայլերը նրան չլսեցին և տուր թե կտաս՝ մի լավ ծեծեցին:

Իսկ գառնուկը, թփի ետևում թաքնված՝ գայլերին չտեսավ: Նա միայն տեսավ, թե ինչպես մութը երկնքից իջավ փափուկ լանջերին, և եկավ Գարեգին պապը: Առվակն անցնելիս նա իրոք ոտքը թրջեց ու փնթփնթում էր, որ հիմա, ախր, լավ չի տեսնում, և թփերը դեսուդեն տանելով փնտրում էր գառնուկին: Գառնուկը թփի ետևում թաքուն ծիծաղեց և դուրս գալով հենց Գարեգին պապի կողքին՝ մի քիչ լուռ կանգնեց ու նրան վախեցնելով բարձր մայեց:

— Որտե՞ղ էիր թաքնվել, չալտիկ-չալպուտուրիկ,— դանդաղ ասաց պապը և ետ նայելով բացեց աջ բուռը:

Պապի բռան մեջ կապույտ լուսնյակի տակ շողաց աղը, և գառնուկը ուրախ-ուրախ լիզեց մի քիչ: Բայց պապը չէր ուզում ամբողջը տալ և բուռը փակելով դանդաղ քայլեց փնթփնթալով, իսկ գառնուկը թռչկոտելով գնում էր նրա ետևից: Երբ հովտից դուրս եկան հանդերի կապույտ, ոլործուն ճամփան, գառնուկն արդեն հիշեց տունը և մորը, վազեց, պապից առաջ անցավ, և գառն առջևից, պապը ետևից՝ նրանք հասան տուն:

**ԱՂՎԱՆ ՄԻՆԱՍՅԱՆ**

## Տեսիլաժամ

Դարձյալ տխուր ես,
Իսկ ես՝ հիմարս, մտածում եմ միշտ,
Որ մարդիկ անգամ անխոս նկարից
Կարող են ժպտալ:

Դարձյալ տխուր ես.
Իմ դեմքը այսօր լոկ ինձ է ծաղրում,
Ես սթափվում եմ դառը հուշերից,
Մահը ժպտում է:

Դարձյալ տխուր ես,
Շատ է ծանրացել թախիծը դեմքիդ
Սիրտդ ու հոգիդ ծամելու համար,
Իսկ ես լալիս եմ:

Կիսիր թախիծդ,
Իմ մոմե ուսին հենվիր անխնա,
Ու թող տանջանքդ փոխանցվի սրտիս,
Հենվիր իմ ուսին:



Բարի լույս ասա,
Թող օրը մանկան աչքերով բացվի,
Որ փակ սրտերում ու փակ դռներում
Ժպիտը լցվի:

Բարի լույս ասա,
Որ բարի բացվի օրը ամենուր,
Ու ամենայն տեղ
Եվ ամեն մի տուն:

Բարի լույս ասա,
Որ բարի ժպտա լույսը աշխարհին,
Որ բացվի բարով,
Որ լինի բարին:

Բարի լույս, մարդիկ,
Ձեզ բարի տեսա,
Ու բարով մնաք...



Երբ դու քնած ես,
Ես մտածում եմ,
Ու կյանքն իմ աչքին
Լոկ մի իրական հեքիաթ է թվում:
Երբ դու քնած ես,
Ես երազում եմ,



Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

Եվ երազանքի հորձանուտն ընկած՝
Լոկ հալածվում եմ:
Երբ դու քնած ես,
Թախիծն իմ հոգում բույն է որոնում,
Որ տեղ չլինի
Այնտեղ քեզ համար:
Երբ դու քնած ես...
Սակայն մի քնիր,
Երբ արթուն եմ ես,
Եկ, վանիր ինձնից թախիծ ու խավար:

## Ես վաղվա հողն եմ

Կծկվում է սիրտս վախից ու ցավից,
Թախիծն ուզում է հոգիս խորտակել,
Ես ինձ խղճում եմ՝ ճնշվելով ցավից,
Եվ ցանկանում եմ ցավից դատարկվել:

Եվ քանի դեռ կամ աշխարհի վրա՝
Ցանկանում եմ այս ցավից հեռանալ
Ու ապրել այնպես, ոչինչ չզգալով,
Դժկամ ցավերը նորեն մոռանալ:

Թախծոտ ընկերը դառնամ այս հողի,
Այս հողի վրա թող երկար լացեմ,
Թող որ վերանամ երկրային կյանքից,
Ու իմ արցունքով չոր հողն այս թացեմ:

Հպվեմ այս հողին, հողի բույր առնեմ,
Հողն առնեմ ցավող իմ մատների մեջ,
Ու հասկանալով, որ վաղվա հողն եմ,
Վերանամ անծայր տարածության մեջ:

●●●

Խոհերս ինձ հետ էլ կիսող չկա,
Վշտերս ինձ հետ էլ կիսող չկա,
Անգամ զգում եմ՝ անզոր եմ ճչալ,
Եվ հիմա. «որդի՛ս» էլ ասող չկա:

Թվում է՝ օրը և՛ կա, և՛ չկա,
Եվ կորցրածս և՛ կա, և՛ չկա,
Օրը թվում է լույսի մի անթեղ,
Թվում է՝ կյանքը և՛ կա, և՛ չկա:

Եվ գալիս է պահ, երբ մտածում եմ,
Թե կորցրածս պետք է որ ետ գա,
Չեմ հավատում, որ իրական եմ, կա՛մ
Էլ ի՞նչ իրական՝ եթե նա չկա:

Ու թվում է, թե երազի մեջ եմ,
Ափսոս, չի՛ թվում, այդպես է որ կա,
Ու համոզվում եմ, որ սա դեռ այն չէ,
Իսկ ում սպասում եմ... երբևէ կգա՞:

**ԽՈՒԼԻՈ ԿՈՐՏԱՍԱՐ**

Թարգմանեց ՍՈՖԻ ԱՎԱԳՅԱՆԸ
Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

Տունը մեզ դուր էր գալիս: Ընդարձակ էր ու հին (մի բան, որ հիմա քիչ կտեսնես, որովհետև հին տները քանդում են որպես շինանյութ օգտագործելու համար, մի բան շահելու), բայց գլխավորը—տունը պահպանում էր մեր նախնիների՝ պապիս, մորս, հորս և մեր մանկության հիշատակները:

Իրենեն ու ես վարժվել էինք միայնակ կյանքին, թեև, իհարկե, դա հիմարություն էր. մեր տանը ութ հոգու ապրելու տեղ կար: Վեր էինք կենում ժամը յոթին, տունը հավաքում էինք, իսկ տասնմեկի մոտ ես անցնում էի խոհանոց, քրոջս թողնելով վերջին երկու-երեք սենյակնե-

րը: Ուղիղ կեսօրին նախաճաշում էինք, և այլևս գործ չէր մնում անելու, թերևս, բացի ափսեները լվանալուց: Սեղանի մոտ հաճույքով մտածում էինք մեր մեծ, խաղաղ տան մասին և այն մասին, թե ինչպես ենք ինքնուրույն, առանց օգնության, լավ կառավարում տունը: Երբեմն մեզ թվում էր, թե տան համար ենք այսպես մենակ մնացել: Իրենեն առանց որևէ պատճառի մերժել էր երկու փեսացուների: Իսկ իմ Մարիա Էսթերը մահացել էր նշանդրեքից առաջ: Մենք մոտենում էինք քառասունին, և յուրաքանչյուրս ներքուստ համատում էինք, թե քրոջ ու եղբոր հանդարտ, պարզ համակեցությամբ էլ կավարտվի այս տանը բնակություն հաստատած տոհմը: Մի օր, մտածում էինք, մենք կմեռնենք, սառնասիրտ ազգականները կտիրանան տանը, կքանդեն, որ օգտագործեն քարն ու հողը, կամ ինքները կոչնչացնենք տունը, քանի դեռ ուշ չէ:

Իրենեն կյանքում ոչ ոքի անհանգստություն չի պատճառել: Առավոտյան, տունը մաքրելուց հետո, նստում էր թախտին և մինչև գիշեր հյուսում իր ննջարանում: Չգիտեմ, ինչո՞ւ էր այդքան հյուսում: Ինձ թվում է, թե կանայք հյուսում են, որպեսզի ուրիշ բան չանեն: Կանայք, բայց ոչ Իրենեն, նա հյուսում էր միայն հարկավոր, ձմեռային բաներ. ինձ համար՝ գուլպաներ, իր համար՝ կոֆտաներ: Եթե հյուսածը իրեն դուր չէր գալիս, քանդում էր, և ես սիրում էի նայել, թե ինչպես է բրդի կծիկը զամբյուղում ժամերով պահպանում նախկին ձևը: Ծաբաթ օրերին գնում էի կենտրոն՝ բրդի: Քույրս վստահում էր ինձ. ես լավ էի ընտրում գույները, և դեռ երբեք ստիպված չենք եղել փոխելու որևէ կծիկ: Օգտվելով այս արտագրոհներից, մտնում էի գրադարան, հարցնում (միշտ ապարդյուն), թե ինչ նորություն կա Ֆրանսիայից: Սկսած 1939 թվականից ոչ մի արժեքավոր բան մեզ մոտ՝ Արգենտինա, չէր գալիս:

Բայց ես ուզում եմ խոսել տան մասին, տան և քրոջս մասին, որովհետև ինքս ոչ մի բանով հետաքրքիր չեմ: Չգիտեմ, ինչ պիտի աներ Իրենեն առանց հյուսքի: Կարելի է վերընթերցել գիրքը, բայց վերահյուսել հյուսվածքը, հեշտ բան չէ: Մի անգամ, կոմոդի ներքևի դարակում, որտեղ պահպանվում էր ձմեռային հագուստեղենը, տեսա բազմաթիվ սպիտակ, կանաչ, մանիշակագույն շալեր, որոնց վրա նավթալին էր ցանված, և որոնք դարս-դարս շարված էին, ինչպես խանութում: Ես չհամարձակվեցի հարցնել, թե այդքանն ինչին է պետք: Փողի կարիք չունեինք, փողն ամեն ամիս ընտանում էինք գյուղից, և մեր ունեցվածքը օրեցօր անում էր: Ըստ երևույթին, քույրս պարզապես սիրում էր հյուսել և հյուսում էր զարմանալի, ես կարող էի ժամերով նայել նրա ձեռքերին, որոնք նման էին արծաթյա ոզնիների, նայել շյուղերի ժիր փայլատակումին, հատակին դրված զամբյուղի կծիկների շարժմանը: Գեղեցիկ տեսարան էր:

Երբեք չեմ մոռանա սենյակների դասավորությունը: Ճաշասենյակը, գոբելենով սենյակը, գրադարանը, երեք մեծ ննջարանները գտնվում էին տան մյուս կողմում, և նրանց լուսամուտները բացվում էին Ռոդրիգես Պենյայի վրա: Տան այդ կողմն էինք գնում միջանցքով, որ մեզնից բաժանված էր կաղնեփայտե դռնով, իսկ այս կողմում՝ մեզ մոտ, խոհանոցն էր, լողարանը, մեր ննջարանները և հյուրասենյակը, որտեղից կարելի էր մտնել թե՛ սենյակները, թե՛ միջանցքը, և թե՝ փոքրիկ սրահակի միջով, խեցեզարդ նախասենյակը: Գալիս ես այդ նախասենյակը, բացում դուռը, մտնում սրահ, այնտեղից էլ՝ տան հեռավոր մասը, որ մեզնից բաժանված է մի ուրիշ կաղնեփայտե դռնով: Եթե այդ դռան առջևով թեքվում ես ձախ, դեպի նեղլիկ միջանցքը, ընկնում ես խոհանոց և լողարան: Երբ կաղնեփայտե դուռը բաց էր լինում, երևում էր, որ տունը շատ է մեծ: Երբ դուռը ծածկում էինք, թվում էր, թե գտնվում էինք սովորական մի փոքրիկ բնակարանում: Իրենենի հետ այստեղ էինք ապրում, դռնից այս կողմ և այն կողմ գնում էինք միայն մաքրելու համար: Ուղղակի ապշում էինք, թե ինչպես է փոշին կպչում կահույքին: Բուենոս-Այրեսը մաքուր քաղաք է, բայց՝ միմիայն շնորհիվ իր բնակիչների: Օդը լի է փոշով, հողը չոր է, և բավական է մի թեթև քամի, որ անմիջապես նստի բարձակների մարմարին, ծածկոցների նախշերին: Դրանից ազատում չկա, ամենուրեք փոշի է. ավելիկով թռթվում ես, նորից գալիս ծածկում է բազմոց ու դաշնամուր:

Ես միշտ հիշելու եմ այս բանը, որովհետև ամեն ինչ եղավ շատ պարզ ու հասարակ: Իրենեն իր սենյակում նստած հյուսում էր, հինչեց ժամը ութը, և ես ու-

զեցի թեյ խմել։ Երբ միջանցքով հասա կիսաբաց դռանը, դեպի խոհանոց թեքվելիս գրադարանում թե ճաշասենյակում աղմուկ լսեցի… Աղմուկը խուլ էր, անորոշ, ասես զրուցում էին կամ բազմոցներ էին շուռ տալիս գորգին։ Եվ անմիջապես, կամ գուցե քիչ անց, աղմուկը լսվեց միջանցքի մյուս մասում։ Ես արագորեն շրխկացրի դուռը և ամբողջ ուժով հենվեցի վրան։ Բարեբախտաբար բանալին այս կողմում էր, և դեռ հանգիստ լինելու համար քաշեցի սողնակը։

Հետո գնացի խոհանոց։ Թեյ եփեցի, բերեցի քրոջս և ասացի.

— Ստիպված դուռը փակեցի։ Այն սենյակները գրավել են։

Նա հյուսածը մի պահ իջեցրեց, վեր բարձրացրեց լուրջ, հոգնած հայացքը։

— Դու համոզվա՞ծ ես։

Ես գլխով արեցի։

— Ինչ արած,— ասաց նա, նորից ձեռքն առնելով շյուղերը,— կապրենք այստեղ։

Ես կամաց-կամաց խմում էի թեյը։ Իրենեն մի քիչ հապաղեց մինչև հյուսքն սկսելը։ Հիշում եմ, մոխրագույն բաճկոն էր հյուսում, որն ինձ շատ էր դուր գալիս։

Առաջին օրերին դժվար էր. դռան ետևում էին մնացել բազմաթիվ սիրելի բաներ։ Իմ ֆրանսիական գրքերը մնացել էին գրադարանում։ Չկային քույրիկիս անձեռոցիկները և տնային տաք կոշիկները։ Ես կարոտում էի իմ գիհու ծխամորճին, իսկ քույրս, թերևս, ուզում էր այնտեղից մի շիշ հին գինի բերել։ Մենք շարունակ ետ էինք տանում դարակները և չգտնելով հարկավոր բանը, տխուր հայացքներ էինք փոխանակում։

— Չէ, այստեղ չի։

Ճիշտ է, մենք ինչ-որ բան շահեցինք։ Տունը մաքրելը հեշտացել էր, և այժմ արթնանալով ուշ, ժամը տասին, արդեն տասնմեկին ամեն ինչ վերջացրած էինք լինում։ Իրենեն ինձ հետ մտնում էր խոհանոց։ Մենք միասին մտածում էինք և որոշում, որ մինչ ես ճաշը կեփեմ, նա որևէ սառը ուտելիք կպատրաստի ընթրիքի համար։ Դեհ, մարդ ուղղակի ալարում է ամեն երեկո կանգնել սալօջախի մոտ։ Իսկ այժմ, պարզապես Իրենեի սեղանին էինք շարում ուտեստները։

Քույրիկիս, ի մեծ ուրախություն իրեն, շատ ժամանակ էր մնում աշխատանքի համար։ Ես ուրախանալու առիթ ավելի քիչ ունեի, գրքերիս պատճառով, բայց որպեսզի նրան չհուզեմ, սկսեցի կարգի բերել հորս դրոշմանիշների հավաքածուն և այդպես սպանել ժամանակը։ Լավ էր, երկուսս էլ չէինք ձանձրանում։ Ավելի շատ լինում էինք քրոջս սենյակում, այնտեղ ավելի հարմար էր։ Իրենեն երբեմն ասում էր.

— Նայիր, ի՞նչ օղակ է։ Կարծես երեքնուկ լինի։

Իսկ ես Իրենեին ցույց էի տալիս թղթե փոքրիկ քառակուսիները, նա հիանում էր արտասահմանյան դրոշմանիշներով։ Լավ էինք զգում, քիչ-քիչ հանգըստանում էինք, այլևս չէինք մտահոգվում։ Առանց դրանց էլ, կարելի էր ապրել։

Այլևս գրելու բան էլ չէր մնա, եթե վերջը չլիներ։ Մի անգամ, երեկոյան, քնելուց առաջ, ծարավեցի, ասացի գնամ խոհանոց, ջուր խմեմ։ Ուրքս շեմին չէի դրել՝ աղմուկ լսեցի չգիտես խոհանոցո՞ւմ, թե՞ լողարանում (միջանցքը թեք էր, և դըժվար էր զանազանել)։ Քույրս (նստած հյուսում էր) նկատեց, որ ես կանգ առա, եկավ մոտս։ Սկսեցինք միասին ականջ դնել։ Աղմուկ էր, անկասկած՝ ոչ թե դըռան ետևում, այլ այստեղ՝ կա՛մ միջանցքում, կա՛մ խոհանոցում, կա՛մ լողարանում։

Մենք իրար երեսի չէինք նայում։ Ես բռնեցի քրոջս ձեռքը և առանց ետ նայելու նրան քաշեցի նախասենյակի կողմը։ Մեր թիկունքում խուլ ձայները ավելի բարձր էին հնչում։ Ես շրխկացրի դուռը։ Նախասենյակում խաղաղ էր։

— Այս մասն էլ գրավեցին,— ասաց քույրս։ Բրդի կծիկն ընկել էր հատակին, գլորվել դռան տակ։ Նկատելով, որ կծիկներն այնտեղ են, դռան ետևում, Իրենեն անտարբեր բաց թողեց հյուսվածքը։

— Դու ոչինչ հետդ չվերցրեցի՞ր,— տխմար հարց տվի ես։

— Ոչինչ։

Մենք դուրս եկանք ինչպես կայինք։ Ես հիշեցի, որ իմ պահարանում տասնհինգ հազար պեսո կար։ Բայց արդեն ուշ էր։

Ժամացույցը թևիս էր, ես տեսա, որ արդեն տասնմեկն է։ Գրկեցի քույրիկիս (կարծես լալիս էր), դուրս եկանք տնից։ Ես տխրել էի։ Դուռը ամուր կողպեցի, բանալին նետեցի ջրատար խողովակի մեջ։ Հազիվ թե, մտածեցի, որևէ թշվառի մտքով անցնի այս ժամին գողություն անել։ Այսինքն տունն էլ արդեն գրավված է։

# Ֆոտոնկարների լվացման ունիվերսալ վաննա




Ձեզ առաջարկվող սարքն աշխատում է հետևյալ կերպ. ծորակից մաքուր ջուրը հատուկ խողովակի (1) միջով մտնում է ներքևի բաշխիչ մասը (2), որտեղից բաշխիչ անցքերով (3) լցվում է վաննան: Երբ ջրի մակարդակը հասնում է վերին բազմաթիվ անցքերին (4), կեղտոտված ջուրը սկսում է այդ անցքերով վաննայի արտաքին (5) պատերով հոսել ներքև՝ դեպի ելքային շտուցերը (6), այնտեղից էլ լցվում է կոյուղի:

Լվացման ընթացքում ֆոտոթղթերը չեն հպվում մեկը մյուսին, այլ մշտա-պես շարժվում են ջրի շիթի ազդեցության տակ՝ նպաստելով արագ լվացմանը: Այդ էֆեկտը ստացվում է շնորհիվ այն բանի, որ վաննայի հատակի հատուկ անցքերը արված են որոշակի անկյունով: Բոլոր մուտքային և ելքային անցքերը հաշվարկված են այնպես, որ ջրի ցանկացած ճնշման դեպքում աշխատանքը կատարվի անխափան: Վաննայի առավելությունն այն է, որ տնտեսվում է և՛ ջուրը, և՛ ժամանակը, և՛ որ ամենակարևորն է, ապահովվում է ֆոտոթղթերի բացարձակ մաքուր լվացումը: Վաննան կարելի է պատրաստել ցանկացած թթվակայուն նյութից (վինիպլաստ, պլեքսիգլազ, պոլիստիրոլ, օրգանական ապակի և այլն):

Այս եղանակով պատրաստված վաննան փորձարկվել է երկար ժամանակ և ցույց է տվել գերազանց արդյունքներ:

ԱԼԱՎԵՐԴՈՒ ՊԱՏԱՆԻ ՏԵԽՆԻԿՆԵՐԻ
ԿԱՅԱՆ

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

«Աքսորել թութակին»․ հենց այսպիսի պահանջով ելույթ ունեցան բրազիլական Սան-Պաուլու քաղաքի բնակիչներ Կառվալիոզ ամուսինները։ Նրանք դիմեցին դատարան՝ բողոքելով իրենց հարևանից, որի բնակարանում խոսող թութակ է ապրում։ Հայցվորները հաստատում են, որ «Բլոնդին» մականունով թութակը մըշտապես խանգարում է իրենց հանգիստը։ Ամեն օր առավոտյան ժամը վեցին նա սկսում է վայրի ձայներ արձակել, անընդհատ կրկնելով հետևյալ խոսքերը․ «Ես կատվին փայտով հարվածեցի»։

Օրերս թութակի և նրա ձախորդ տիրոջ դեմ դատական պրոցես է սկսվելու։ Այնինչ ամբողջ շրջանը բաժանվել է երկու անհաշտ խմբավորումների։ Մեկը՝ ավելի բազմաքանակը, պահանջում է ազատություն տալ «Բլոնդինին», մյուսը՝ անհապաղ վտարել նրան։



Հեռվից տեսնելով ոստիկանին, ճապոնացի վարորդների մեծ մասը դանդաղեցնում է ընթացքը։ Շատերը չգիտեն, որ իրենց առջև ոչ թե կենդանի մարդ, այլ համազգեստավոր տիկնիկ է։ Բայց նույնիսկ նրանք, ովքեր գիտեն այդ, նույնպես դանդաղեցնում են ընթացքը՝ հանկարծ ու ոստիկան լինի։ Փորձը շատ արդյունավետ եղավ։ Այն բանից հետո, երբ ճամփեզրին հայտնվեցին համազգեստավոր տիկնիկները, ճանապարհատրանսպորտային վթարների քանակը խիստ կրճատվեց։



Մեքսիկական որոշ գյուղերում կանայք մազերը զարդարում են կենդանի մողեսներով, որոնք փաթաթում են ոսկե կամ արծաթե թելերով, ամրացնում են հերակալներին։

Ֆիլիպիններում նույնպես տարածված են կենդանի զարդերը, միայն թե այնտեղ հարգի են մանր ծովախեցգետինները։ Ֆիլիպինցի կանայք դրանք տեղավորում են փոքրիկ, կլոր ակվարիումներում։ Փոքրիկ էակները, գտնվելով անընդհատ շարժման մեջ, գեղեցիկ կերպով երփներանգվում են։ Ականջօղերը, որոնց մեջ լողում են մանր ծովախեցգետինները, մեծ պահանջարկ ունեն։

Մադրիդի կենդանաբանական այգու աշխատակիցները անսովոր կերպով նըշեցին իրենց սիրելի պանդա (կատվանման արջուկ) Շուլինի ծննդյան հինգ տարին։ Հոբելյարին մատուցեցին 12 տոննա կշիռ ունեցող մի մեծ տորթ, իսկ հանդիսությանը հրավիրված մի քանի հազար երեխաներ հանգցրին տորթի վրա դրված հինգ մեծ մոմերը։

Երբ պանդան ծնվեց, կշռում էր ընդամենը 110 գրամ, իսկ ծննդյան տարեդարձին նա կշռում էր 116 կիլոգրամ։

Շուլինը գրանցվել է Գինեսի ռեկորդների գրքում, որպես ամենաթանկարժեք կենդանին։ Նրա գինը է 1,6 միլիոն դոլար։

### 19 ԷՋԻ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

● Հաւսարակածում։ Հասարակածում մար-

մինը կորցնում է բևեռում եղած կշռի մեկ երկուհարյուրերորդ մասը:

● Քանի որ ջուրն էլ է վեց անգամ լուսնի վրա թեթև, ապա լողորդը կսուզվի լուսնային լճում նույն հեշտությամբ ինչ երկրի վրա:

● Լուսնի մահիկի փոսիկն է ուղղված արևի կողմը, որը սխալ է, որովհետև լուսինը լույս է ստանում արևից, նշանակում է նա չի կարող իր չլուսավորվող կողմով ուղղված լինել արևին:

● Հասարակածում երկրի յուրաքանչյուր կետ շարժվում է վայրկյանում 464 մ արագությամբ: Ժամանակակից գերձայնային ինքնաթիռով, որոնց արագությունը վայրկյանում հասնում է մինչև 600 մ կարելի է առաջ ընկնել երկրի պտույտից: Իսկ Մոսկվայի աշխարհագրական լայնության վրա երկրի պտտման արագությունը կարելի է գերազանցել նույնիսկ ժամանակակից մարդատար ինքնաթիռներով: Եթե արագությունը լինի երկրի պտույտի արագությանը հավասար, ապա մարդը արեգակը կտեսնի անշարժ, իսկ եթե արագությունը գերազանցում է երկրի արագությանը, ապա կտեսնի արևածագը արևմուտքում: Իսկ մարդը բևեռից 50 կմ հարավ կարող է գերազանցել երկրի պըտույտի արագությանը:

● Կողմնացույցը տեղադրելով հյուսիսային մագնիսական և հյուսիսային աշխարհագրական բևեռների միջև մենք կըտեսնենք, որ սլաքի հյուսիսային ծայրը ուղղված է աշխարհագրական բևեռ, այսինքն՝ հյուսիս:

● Ուկրաինայի հարավ-արևմուտքում է գտնվում Լիման-Յալնուկ լիճը, որը վտակներով միացած է Կուգուրմուտ լճին, որից սկիզբ են առնում Դանուբ թափվող առվակները: Գարնանային ձնհալին, երբ Դանուբի մակարդակը դառնում է ավելի բարձր, քան այդ լճերինը, ջրերը հոսում են հակառակ՝ դեպի վերը նշված լճերը: Այդպիսի գետեր կան նաև Կարելիայում: Նույն բանը կատարվում է նաև Նևա գետի հետ, մակընթացությունների և ուժեղ քամիների ժամանակ:

● Սարագոսյան ծովն է, որ գտնվում է Ատլանտյան օվկիանոսում: Այդ ծովը նըշանավոր է նրանով, որ համարյա ամբողջությամբ ծածկված է ջրիմուռներով, և նրա համար ափեր են հանդիսանում օվկիանոսի ջրերը:

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:
ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

**«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.**

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 3•89



*Հանձնված է արտադրության 4.01.89 թ.: Ստորագրված է տպագրության 14.04.89 թ.: Թուղթ օֆսեթ, $70 \times 100^{1}/_{16}$: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,292 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 61282: Պատվեր՝ 11: Գինը՝ 15 կոպեկ:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 4.01.89 г. Подписано к печати 14.04.89 г. Формат $70 \times 100^{1}/_{16}$. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 61282. Заказ 11. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկի 1-ին էջին՝ Մ. ՍԱՐՅԱՆ. «Աղբյուրի մոտ»



ԿԵՉԱՌԻՍԻ ՎԱՆՔԸ Լուսանկարը՝ ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՆՅԱՆԻ

**Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈԼՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր):

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ՎԱՐԴԱՆՅԱՆ Ա.:

ԻՆԴԵՔՍ՝ 77806

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.